# ՀԱՅ ԱԶԳՈՒԹԻՒՆ

## ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՄԱՂԱՔԻԱՅ Տ. ՎԱՐԴԱՊԵՏԻ ՕՐՄԱՆԵԱՆ

ԱՐՏԱՍԱՆԵԱԼ

Ի ԼՍԱՐԱՆԻ ԱՐԱՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

Ի ԳԱՏԸ ՔԷՕՅ

Ի 23 Դեկտեմբերի 1879





ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. Մ. ՏՆՏԵՍԵԱՆ

1880

# ՀԱՅ ԱԶԳՈՒԹԻՒՆ

## ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՄԱՂԱՔԻԱՅ Ծ. ՎԱՐԴԱՊԵՏԻ ՕՐՄԱՆԵԱՆ

ԱՐՏԱՍԱՆԵԱԼ

Ի ԼՍԱՐԱՆԻ ԱՐԱՄԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻՆ

Ի ԳԱՏԸ ՔԷՕՅ

Ի 23 Դեկտեմբերի 1879







ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ
ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Ե. Մ. ՏՆՏԵՍԵԱՆ
1880

Տեա՛րք և Տիրուհի՛ք,

Չեմ գիտեր թէ ներքին ըղձիցս բուռն զօրութիւնը, թէ Ձեր ազգասէր բաղձանաց զօրաւոր ազդեցութիւնը, կամ թէ ուրիշ աներեւոյթ ոյժ մը զիս կը բռնադատէ, որ երբ ազնուախոհ անձանց հրաւիրանօք ազգասիրաց պատկառելի ժողովի մը մէջ կը գտնուիմ և հոն ատենաբանելու պատիւը ինձ կը յանձնուի, ի հարկէ իբր խօսիցս նիւթ նոյն իսկ զմեզ մէջտեղ դնեմ, և մեր վրայ խօսիմ։ Այսպէս ընելով՝ կը տեսնամ որ ձանձրացնելու վտանգի մէջ կ'իյնամ և նիւթոյն նորութեան օգուտէն կը զրկուիմ, բայց տակաւին այն գաղտնի զօրութիւնը զիս կը բռնադատէ. և այսօր ալ, Տեա՛րք իմ և Տիրուհի՛ք, որ Ձեր իմ վրաս դրած սիրալիր պարտաւորութեան համեմատ բանախօսելու կը ձեռնարկեմ, համարձակ կը յայտարարեմ թէ նորէն Հայութեան վրայ պիտի խօսիմ։

Ինչ և իմացան մեր հայրերը և նախահայրները այդ անուան ներքեւ, ինչ և իմացանք մեք տարիներ առաջ այդ անունը բերաննիս առնելով, ինչ և իմանան այսօր օտարք և օտարացեալք նոյն այս անունը երկրորդելով, ստոյգ է, Տեա՛րք իմ և Տիրուհի՛ք, թէ մեք որ աստ համախմբեալ եմք, և այն ազգայինք՝ որ քաղաքիս մէջ և ուրիշ քաղաքաց մէջ մեր իղձերովը վառեալ են և մեր բաղձանքներով կ'զգածուին, մեք ամենքնիս այսօր կարծես թէ նոր իմաստ մը տուած եմք այդ բառին, և նոր յոյսեր կը հաստատեմք անոր վրայ. նոր

տեսութիւններ ունիմք անոր բացատրութեան նկատմամբ, և նոր դիտակէտներ կը սահմանեմք անոր նպատակի մասին։ Երբ նոր կ՚անուանեմ Հայութեան իմաստը, տեսակէտը և դիտակէտը, չեմ ուզեր ամենեւին այնպէս իմանալ թէ նորատեղծ և ինքնահնար են այդ ամենայն, կամ թէ անցեալը չունէր և չէր պարունակէր ամենեւին այն պարագաները զորս մեք այսօր մէջտեղ դրած եմք, և որովք մեր միտքը կ՚զբաղեցընեմք, և որուն մեր փոյթն ու ջանքը նուիրած եմք։ Այս կերպ նորութիւն չէ, եղբա՛րք իմ, Հայութեան արդի նորութիւնը, վասն զի այդ կերպ նորութիւն մը՝ ոչ միայն անօգուտ կ՚ըլլար, այլ և ապօրինաւոր. վասն զի ո՛չ հնար է և ո՛չ բնական կամ բարոյական օրինաց համաձայն է օգտակար արդասիքներ սպասել իրէ մը՝ որ օգտին ո՛չ սկիզբը ունի և ո՛չ ընդունակութիւնը։ Մեր ըսած նորութիւնը, զարգացման նորութիւն է. ինչպէս նոր կրնայ անուանիլ հալեալ և յղկեալ մետաղը՝ հողախառն կոշտ զանգուածին հետ բաղդատուելով, ուսկից զատեալ և հանեալ է, այսպէս է մեր Հայութեան նորութիւնն ալ մեզմէ առաջուան Հայութեան հետ բաղդատուելով. Ո՛չ տարբեր Հայութիւն է, և ո՛չ տարբեր ձրիւք ճոխացեալ, այլ մի և նոյն Հայութիւնն է. միայն որ ժամանակը և աշխատանքը իրեն վրայ այնպիսի փոփոխութիւններ կատարեցին՝ որ նախկինին հետ բաղդատուելով բոլորովին նոր կը կարծուի։

Սակայն հոս չէ որ կանգ կ՚առնու մեր բաղձանքը, և ոչ հոս կ՚աւարտի Հայութեան դիտակէտը. մանաւանդ թէ պիտի ըսեմ ևս, թէ մեք՝ եթէ ուզեմք իսկ և ջանամք որ Հայութեան զարգացման շրջանը դադա-

րեցնեմք, և անոր ներկայ փոփոխմանց դէմ արգելքներ յարուցանեմք, տակաւին անհնար է զայն դադարեցնել և անփոփոխութեան վիճակի մէջ դնել։ Բնական և բարոյական օրինաց հարկը՝ շարժման հարկ է, և այդ շարժումը մեք չեմք կարող խափանել։ Միայն որ շարժմանց և փոփոխութեանց ալ չափ մը կայ. այդ չափն ալ մասամբ իւր ներքին ընդունակութեան և մասամբ մըն ալ արտաքին պատճառաց գործակցութեան արտադրեալն է։ Ո՛չ դուք կարող էք իրի մը այնպիսի կերպարաններ տալ որուն իրը ինքնիրեն ընդունակութիւն չունի, և ո՛չ ալ իրը կարող է ինքնիրեն բոլոր ընդունակ եղած կերպարանները ստանալ՝ եթէ արտաքին պատճառները իրեն չգործակցին։

Ընդհանուր խօսքերը թողումք, և մեր նիւթին դառնամք։ Այն իրը որ շարունակաբար փոփոխութեամբք իւր նոր կը կերպարանի, և փոփոխութեանց շարունակելովը դեռ ուրիշ նորութիւններ ալ պիտի ունենայ, և կ՚ուզեմք որ ունենայ, Հայութիւնն է։ Արտաքին պատճառք որ պիտի գործակցին՝ թէպէտ եղանակաւ իւր բոլոր աշխարհս է, ազգաց ձեռնտուութիւնք, տէրութեանց միջամտութիւնք և ի մասնաւորի՝ մերոյս Բարձրագոյն պետութեան բարեխնամ հովանաւորութիւնն, սակայն ի գլուխ գործակից պատճառաց եմք մեք իսկ Հայք», ազգովին և խմբովին, առանձնակի և անհատաբար. որ Հայութեան օտար ինչ չեմք, սակայն տարբեր եմք միշտ, տարբերութեամբն որով զանազանին անհատն և բազմութիւնն, մասն և բոլորն, գործողն և գործեալն, գործին և գործն։ Հայքս պիտի աշխատիմք որ Հայութիւնը յառաջադիմէ և զարգանայ։

Հայութիւնը յառաջադիմէ և զարգանայ · բայց մինչև ո՞ւր ։ Դուք, ունկնդի՛րք իմ, դուք որ Հայութեան բաղդին խորհուրդներովը զօրհանապազ կ'զբաղիք, և որ Հայութեան զարգացման համար ջանք ու ծախք չէք խնայեր, դուք ձեր սրտին և ձեր ներքին զգածմանց հարցուցէ՛ք թէ ցո՞ր վայր յառաջացած կը բաղձայք տեսնալ Հայութիւնը, ցո՞ր վայր բարձրացած կը ցանկայք նկատել ձեր ազգութիւնը ։ Դուք ձեզի հարցուցէ՛ք, և ձեր սրտին և զգածմանց պատասխանը լսեցէ՛ք ։

Լսե՛մք, եղբա՛րք իմ, քաղաքական և պետական խնդրոց նկատմամբ, որոց կնճիռը աւելի է քան թէ օգուտը · լսե՛մք այնպիսի տեսութեանց և նպատակաց վրայ որք կեղակարծ են, և որոց ո՛չ ժամանակը կը նպաստեն և ո՛չ պարագայք · լսե՛մք այնպիսի կէտերու վրայ որոց հետեւելու համար և որոց վրայ խօսելու համար, ձեզ միջոց կը պակսի և ինծի նիւթ ։ Այլ խօսիմք այն պարունակին մէջ՝ որ գործնական է և անմիջական և պարագայից յարմար ։

Դուք կ'ուզէք և կը բաղձայք, ունկնդի՛րք իմ, որ Հայութիւնը իրական և կատարեալ ազգութիւն մը ըլլայ. որ Հայութիւնը յառաջադէմ և զարգացեալ ազգաց օրինակին նմանի և անոնց հանգունատիպ լինի · որ Հայութիւնը գիտնայ իւր գործը և իւր պարտքը և իւր իրաւունքը՝ այդ ծանր պարագային մէջ, յորում արեւելեան խնդիրք և արեւելեան ազգութիւնք նոր ապագային երկամբք կը տադնապին ։ Արեւելք իւր սկիզբէն ազգութեանց զանազանութեամբք ապրեցաւ · և արեւելեան կայսրութիւնք ազգութեանց տարբերութիւնք իրենց հիմնակէտ ըրին յամենայն դարու և յա-

մենայն ժամանակի։ Այն հոգւոյն ծառայելով և Օսմանեանս վեհափառ կայսրութիւն, ազգաց զանազանութիւնները և իւրաքանչիւր ազգային տարեր առանձնակի գոյութեան և առանձնակի զարգացման սկզբունքը այնչափ իրեն բնական և այնչափ իրեն օգտակար գտաւ, որ ոչ միայն զայն օրէնսդրութեամբ նուիրագործեց, այլ և երբ անկէ բաժնուելու փորձերու ուզեց ձեռնարկել, անհնարութեան դրից մէջ գտնուեցաւ։ Հայութեան առանձնակի ազգութիւնը օրինաւոր գործ մի է. Հայութեան առանձնակի զարգացումը օրինաւորութեան հետեւանք մի է. Հայութեան յառաջադէմ ազգութեանց կարգը բարձրանալը, անկապտելի իրաւունք մի է։ Եթէ այսօր Յոյնն ու Պուլկարը, Ալպանիացին ու Եգիպտացին, մինչև ևս մասնաւոր կղզեաց և լերանց բնակիչք, ամենայն համարձակութեամբ և ամենայն իրաւամբ իրենց ազգութիւնը կը պնդեն, և իրենց ազգութեան համար կ'աշխատին, և իրենց ազգութեամբ զաշխարհ կ'զբաղեցընեն, ապա և Հայքս եթէ ոչ առաւել, գոնեա հաւասար իրաւամբք կրնամք մեր ազգութեան խնդիրը ի լոյս աշխարհի և ի տես պետութեանց համարձակաբար պաշտպանել, և ամենայն ուժով և պնդութեամբ անոր համար աշխատիլ։ Զայս կ'ըսեմ, ոչ զի չեմք ընէր, այլ ի յայտնել միայն, թէ մեր ձգտումը և մեր բաղձանքը այնպիսի ինչ է, որուն արդարութիւն և իրաւունք, օրինաւորութիւն և պատշաճողութիւն հաւասարապէս կընպաստեն։

Այս կէտը և ոչ իսկ ապացուցանելոյ պէտք կայ. վասն զի և ոչ իսկ կարծեմ թէ ղիմադրող ըլլայ. գոնեա այնպէս չէք դուք՝ որ զիս կը լսէք։ Զեր սիրտն ալ

կը վկայէ իմինիս պէս. և իմ սրտիս վկայութիւնը ձեր սրտին վկայութեան բան մը չկրնար յաւելուլ։ Ուր մեր սիրտերը նուաղ վստահութեամբ կը յառաջեն, և ուր հակառակորդաց դժուարութիւնք մեր սրտին վրայ ձախող ազդեցութիւն մը կը գործածեն, նպատակին հասնելնուս վստահութիւնն է. այն ահեղ «արդեօք»ը՝ որ այնչափ արի սիրտեր իսկ կը տանջէ, մեր վրայ ալ կը զօրանայ մերթ ընդ մերթ, և մեր ամենէն եռանդեամբ մրցած ճգնաժամի վայրկեանին, յանկարծական խորհուրդ մը կը յուզի. կարո՞ղ է արդեօք Հայութիւնը կատարեալ ազգութիւն կազմել։ Երբ զանազան դժուարութեանց յաղթելէ ետքը առաւել դժուարինին դիմաց անպտուղ և ստերջ կարծուած քրտինքներ կը հեղումք, դարձեալ այն ահեղ «արդեօք»ը ի վեր կը յառնէ. կարո՞ղ է արդեօք Հայութիւնը այդչափ դըժուարութեանց յաղթող ըլլալով իւր դիտակէտին հասնիլ։ Երբ յառաջադէմ ազգաց օրինակներուն հետ մեր ազգը բաղդատելով Հայութիւնը յետնեալ կը գտնամք, վերստին նոյն ահռելի «արդեօք»ը բոլոր իւր դժխեմ լուսովը կը ցոլանայ մեր մտաց մէջ. կարո՞ղ է արդեօք Հայութիւնը իւր խեղճութեանց անդունդէն ազատելով՝ այնպիսի բարձրութեան վերամբառնալու ընդունակ ըլլալ։

Այդ ահեղ «արդեօք»ը կը թելադրէ ինձ, ունկնդրացդ՝ չըսեմ սիրտը՝ այլ միտքը ապահովելու աշխատիլ, և Հայութեան վերաբերեալ անցքերը և եղելութիւնները, նշանները և կարողութիւնները մէջտեղ բերելով ջանալ ապացուցանել թէ Հայութիւնը այնպիսի ձրիւք զարդարեալ է, որ զմեզ ապահով կրնան ընել թէ Հայութիւնը սահմանեալ է կատարեալ և յառա-

ջադէմ ազգ մի լինել յարեւելս, այն ազգութեանց օրրանին մէջ, ուր մեծամեծ ազգութիւնք փայլեցան երբ աշխարհ ամենայն կիսավայրենի էր տակաւին, և ուր չէ սպառած և անհետացած ազգութիւններ բուսցնող չնաշխարհիկ սերմը։ Հարկ է ինձ ուրեմն Հայութեան ձիրքերը բացատրել, ոչ թէ բացարձակ և գոգ. անձնապատակ ենթադրութեան մը ներքեւ, այլ ուղղակի և ճշգրակի ցուցնելու համար՝ թէ ունի այն ձիրքերը. որ մեր նպատակին կարեւոր են։

Գոյութիւն՝ ամենայն իրաց առաջին սկիզբն և առաջին պայմանն է, ամենայն կատարելութեանց պատճառ և ամենայն հանգամանաց գլխաւորութիւն. այն աստիճան որ նոյն ինքն Աստուածային մեծվայելչութիւնն ուրիշ կերպով մը չկրցաւ ամփոփել իւր անհուն ստորոգելեաց տարածութիւնը, բայց եթէ կոչելով զինքն «Որ էն». զի յէութեան անդ՝ որ և գոյութեան, կը պարունակին որչափ ինչ հնար է խորհել կամ երեւակայել ի բարեաց և ի բարեմասնութեանց անտի։ Հայութեան ալ առաջին ձիրքը իր գոյութիւնը պէտք է որ ըլլայ. և եթէ չեմք ուզեր իսկ զայն նկատել իբր մի միայն ձիրք որ բոլոր մնացածները յինքն ամփոփէ և գոգ անոնց հետ նոյնանայ, որպէս զի խօսքերնուս ընթացքը չերկնցնեմք և մեր մտաց սովորական իմացուածոյն չհակառակիմք, պէտք է գոնեա տալ գոյութեան այն նախամեծար առաջնութիւնը՝ որ իրմէ կապտել անհնարին է։

Արդեօք Հայութիւն մը կա՞յ այսօր, և թէ Հայութեան այժմեան կացութիւնը Հայ ազգութիւն կրնա՞յ անուանիլ, հարկ չէր և ոչ իսկ մեկնութեանց և ապացուցութեանց ենթարկել. եթէ չլինէին օտարք, չլի-

նէին և ազգայինք ոմանք, որոց կարծեաց համեմատ Հայութեան այժմեան կացութիւնը, ազգութեան մը կայութեան և էութեան ո՛չ կը համապատասխանէ և ո՛չ կը նախապատրաստէ։

Հայութիւն մը այսօր կայ, կ՚ըսեն այնպիսիք, վասն զի կան խել մը անձինք որք Հայ կ՚ըսեն զիրենք, և Հայերէն լեզու կը խօսին և Հայ եկեղեցի մը ունին. իսկ ազգութիւնը քաղաքական դիրք մի է, որ կը պահանջէ նմանապէս քաղաքական կեդրոն մը որուն շուրջը բոլորին ամենայն տարերք Հայութեան, և որ իբր կեդրոն անուոյ կարենայ յինքն ամփոփել ամեն շառաւիղները, և անոնց հաւասար շարժումը և միացեալ գործը կանոնաւորէ։ Հայութիւնը այդ կեդրոնը չունի, և որ չար ևս է, այդպիսի կեդրոն մը ունենալու յոյսն իսկ չունի. վասն զի ամենուստեք արգելիչ պարագայք և դժբաղդ բաժանմունք խափանարար կը կանգնին։ Հայք ցրուեալ են աշխարհաւ, գո՛գ իրենց հայրենիքը կորսնցուցած, վայրավատին ընդհանուր աշխարհի մէջ, հրէական ազգին պատկերը կը կրեն իրենց վրայ. և ինչպէս սոքա ի զուր կ՚սպասեն հրէական թագաւորութիւնը վերանորոգող Մեսիային, նոյնպէս և Հայոց համար յոյս չկայ որ բնական ընթացիւք կամ երկնային այցելութեան սքանչելեօք իրենց քաղաքական դիրքը՝ այս է իրենց օրինաւոր ազգութիւնը վերանորոգի։

Ինծի համար օտար կը նկատեմ հրէական ազգին օրինակը. և չեմ ուզեր խնդիր յուզել թէ պիտի վերանորոգի՞ն արդեօք Դաւթի աթոռը և Սողոմոնին փառքը Սիոնի բարձանց վրայ։ Իսրայելի զաւակք այսօր շատ զօրութիւններ գրաւած են, դրամական զօրութիւն, ազդեցութեան զօրութիւն, դաստիարակու-

թեան զօրութիւն. եթէ այս զօրութիւնք բաւական լինէին, ես պիտի ըսէի թէ մօտալուտ է Հրէութեան վերականգնումը իր հայրենեաց մէջ. սակայն այն յի-չատակեալ զօրութեանց քով շատ տկարութիւններ ունի Հրէութիւնը, ինչպէս են իր հայրենական երկ-րին մէջ գոյ չգոյութիւնը, իր բովանդակութեանը ի սփիւռս աշխարհաց տարածումը, և գտնուած տեղերը քաղաքական դիրք մը չվայելելը. այնպէս որ Հրէաս-տանի մէջ Հրէութիւնը ոչ թէ հարկ կը լինի զօրացնել, այլ մանաւանդ թէ ի նորուստ հաստատել։ Եթէ մի և նոյն վիճակը ստուգուէր ևս Հայութեան վրայ, թերևս ստիպուէինք և մեք առարկեալ յուսահատութեանը մասնակցիլ. զի ես չեմ ուզեր հաստատել թէ հրէա-կան ազգութիւնը իւր ներքին խղճին մէջ վերջնական և աննորոգելի յուսահատութիւն զգայ իւր ապագային նկատմամբ։

Բայց ես հրէական ազգին դիրքը և յոյսը չպիտի մեկնաբանեմ. և թէ ըստ դիպաց անոր վրայ խօսեցայ, միայն ուզեցի յուշ առնել թէ շատ տարբերութիւն կայ մեր և նոցա մէջ. և թէ երբէ՛ք ընդունելի չկրնար ըլ-լալ այն բաղդատութիւնը զոր ոմանք կ՚ընեն, որպէս զի Հայութեան ապագային առջեւ յուսոյ դռները փա-կեն և Հայկեան սերունդին աշխատելու քաջալերու-թիւնը չիջուցանեն։

Երբ ես յուսալից գաղափարներ կ՚արտայայտեմ, չեմ ուզեր ևս ըսել թէ այսօր կատարեալ ազգութեան մը կատարելութիւնները կը վայելեմք. ո՛չ, եղբա՛րք իմ. եթէ և անձնասիրութիւնը ուզէ մեզ խաբել, դարձեալ մեք իրականութեան նշաններէն չպիտի հեռանամք և անաչառ քննադատութեամբ պիտի խոստովանիմք թէ

շատ բան կը պակսի մեզ արդեամբ, այլ թէ ոչինչ կը պակսի մեզ ակնկալութեամբ. շատ բան չունիմք այսօր իրօք, բայց շատ գիտեմք ունենալ յուսով. շատ բան դեռ չստացանք նիւթականապէս, բայց բազում ինչ ստացեալ ունիմք տեսականապէս: Ես չեմ ըսեր թէ Հայութիւնը ազգութեան ամեն արդիւնք կատարեալ ունի, այլ թէ Հայութիւնը ազգութեան ամեն ձիրքերը յինքն կը պարունակէ: Եւ զայս կ'ըսեմ, վասն զի ունի գլխաւորապէս գոյութեան ձիրքը:

Ինչո՞վ մեք ազգութեան մը գոյութեան ձիրքը կը յատկացնեմք: Եթէ ուզեմք ճիշդ պատասխան մը գտնալ որ գիտնական տեսամբ և տրամաբանից խըստութեամբ կատարեալ և պարզ ըլլայ, թերևս ուզածս չպիտի գտնամ, և գիտութեանց գրքերն իսկ ինծի պիտի լռեն: Հարկ է ուրեմն որ մասերը թուելով ամբողջութիւնը ձեւացնելու աշխատիմք. և այդ վախճանաւ պիտի ըսեմ թէ ազգութիւն մը գոյութիւն ունենալու համար պէտք է ունենայ ևս աւանդութիւն մը, բազմութիւն մը, լեզու մը, կեդրոն մը, կազմակերպութիւն մը, յօդակապութիւն մը և նպատակ մը. Թերևս ուրիշ բաներ ալ հարկաւոր են, սակայն զրուցուածները գլխաւորներն և էականներն են, և եղանակաւ իմն լռելեայն կամ յայտնապէս կը պարունակեն ուրիշ այլ յատկութիւնները:

Կայ դրութիւն մըն ալ որ աւելի ընտանի է Եւրոպական ազգաց կամ իրենց սովորութեանց, որով ազգ-բառը պետութեան թէ ոչ հոմանիշ գոնէ անոր միացեալ կ'ըմբռնեն, և ազգութիւն անդ միայն կ'ընդունին ուր և պետական առանձինն դիրք մը կայ. և ըստ այսմ բոլոր այն ժողովուրդք որք իւրաքանչիւր պե-

տութեան էական կամ ամբողջացուցիչ մասերը կը կազմեն՝ համազգիք կ'անուանին, առանց խորհելու թէ զանազան ժողովուրդ են, զանազան լեզու ունին և զանազան յատկութիւններ. ինչչափ ալ այդ առումը ոմանց համար օրինաւոր ըլլայ և այլոց համար սովորական, ես բաւական կը սեպեմ յիշեցնել միայն թէ այդ չէ ընդհանուր և ճիշդ առումը, և ո՛չ այսու առմամբ վարեցաւ և կը վարի բովանդակ քաղաքականացեալ աշխարհը։ Նաև Եւրոպական տէրութիւնք ո՛չ յանցեալն և ո՛չ յայժմուս իրենց պետութեանց սահմաններով իրենց ազգութեանց սահմանները նոյնացուցին։ Եւ ինչո՞ւ երկար քննութեանց մտնամ. նայեցէ՛ք Իտալիան, Գերմանիան, Աւստրիան, և հարցուցէ՛ք թէ արդեօ՞ք Իտալացի ազգը Իտալիոյ Թագաւորութեամբ կը վերջանայ, կամ թէ գերմանական ազգութիւնք Գերմանիոյ կայսրութեա՞մբը կ'աւարտի, կամ թէ բոլոր Աւստրիոյ կայսերութեան հպատակք Աւստրիացի՞ք են արդեօք և ազգաւ։ Այդպէս իմացէք և ուրիշ պետութեանց վրայ ալ. ուստի օրէն է ինձ՝ որ երբ Հայութեան վրայ կը խօսիմ և իրեն ազգութեան ձիրքերը կը յիշատակեմ, լռեմ բնաւին իւր պետական կացութեան նկատմամբ, և ամենայն իրաւամբ պնդեմ թէ ինքն ազգային գոյութեան ամեն ձիրքերը ունի, թէպէտ և պետականը չունենայ։

Եւ ոչ իսկ ազգութեան մը գոյութեան համար մասնաւոր քաղաքական դիրք մը՝ այնպէս խստիւ էական է, որ առանց անոր ազգութիւնը ոչինչ համարուի։ Գիտեմ թէ քաղաքական թէպէտ անկատար՝ թէպէտ ստուերական դիրք մը բազմօք կընպաստէ ազգութեան մը թէ ոչ բացարձակ գոյութեան, գոնեա իւր աղա-

հով պահպանութեան համար, և դարձեալ՝ եթէ ազգութիւնք կը կործանին և կ'անհետանան, բուն իսկ պատճառը իրենց և ոչ առերեւոյթ քաղաքական դիրք մը ունենալն է։ Հնար է երբեմն որ ազգութիւն մը առանց այս պայմանի ալ, իր գոյութիւնը պահպանէ. երբոր գործը մէջտեղ է, պատճառին գոյութեան վրայ միճել աւելորդ է. սակայն այն առթին մէջ կարծես թէ պէտք կ'ըլլայ սքանչելիք մը ճանչնալ, և այն ազգութեան որ այսպէս կը փառաւորուի, նահատակի պսակը նուիրել ի պատիւ, և իր արդեանց վրայ հիասքանչ զարմանալ։

Իմ խօսիցս նպատակը լոկ ներկային վրայ հիմնեալ է այսօր, և պատմութեան սահմանին մէջ և ոչ ի հեռուստ կ'ուզեմ մնալ, որով և բոլորովին մէկդի կը թողում զննել և քննել թէ Հայութիւնը ունեցա՞ւ ցարդ քաղաքական կերպարանի մը իսկ ստուերը, որ իւր գոյութեան նպաստեց. կամ թէ ազգային Պատրիարքութիւնը իրաւցնէ այն քաղաքական դի՞րքն էր որ ազգի մը գոյութեան թէ ոչ հիմը՝ գոնէ հովանաւորն կրնայ ըսուիլ։ Ինծի համար բաւական պիտի ըլլայ հաստատել և հաւաստել թէ Հայութիւննիս ունի այսօր այն պայմանները, որովք ազգութեան մը գոյութիւնը կը ճշմարտի։

Ազգութիւն մը երբէք իբր նոր ինչ չկրնար ստեղծիլ, և այն ամեն զանազան բաներու մէջ զորս մարդկային ճարտարութիւնը գիտէ ի նորուստ հիմնարկել աշխարհիս վրայ, և ոչ կերպով մը կը մտնայ ազգութիւնը. Նոր ազգութիւն մը շինուած կամ հնարուած երբէք տեսած չեմք, և ոչ իսկ լսած կամ ընթերցած։ Շատ աղէկ կրցած են մարդիկ ազգ մը մեծցնել, աղ-

գերը ձուլել, ազգ մը կազմակերպել, ազգ մը զօրացնել, միւսը տկարացնել, ուրիշ մըն ալ ոչնչացնել. բայց նորէն ազգ մը ստեղծած չունին։ Այս պատճառաւ ազգի մը գոյութեան էական է աւանդութիւնը. թո՛ղ իր վէպը առասպելական ըլլայ, թո՛ղ իր պատմաբանք ստախօսք և հակառակախօսք ըլլան, թո՛ղ իր պատմութիւնք ամենեւին մխիթարութեան և պարծանաց կէտ մը չունենայ, թո՛ղ անշուք ըլլայ և անպատիւ իսկ ազգի մը աւանդութիւնք. սակայն աւանդութիւն մը պէ՛տք է որ ունենայ, որոյ վրայ իր գոյութիւնը հիմնուի։

Իսկ մեք, եղբա՛րք, երբ մեր ազգին վրայ կը խօսիմք, հարկ չկայ որ սոյնչափ զմեզ նուաստացնեմք, և իմ խօսքերս երբէք չեն դիտեր հայազգեաց խղճերը պզտիկցնել և քիչով գոհանալու զձեզ վարժեցնել։ Թող բացուին, եղբա՛րք իմ, թող բացուին ձեր խղճերը ի յոյս փառաց և ի յոյս յառաջադիմութեան. բաւական պատուաւոր և յուսալից աւանդութիւն մը կ՚զգայ Հայը իր սրտին մէջ, երբ Սրբազան պատմութեանց էջերուն մէջ յիշատակեալ կը գտնայ իր Եփրատը և իր Արարատը, իր Թորգոմեան ճետը և իր Ասքանազեան սերունդը։ Կը բարձրանան Հայուն զգածմունքը երբ կը տեսնէ արտաքին պատմութեանց և բեւեռական յիշատակաց մէջ որ յանյիշատակ ժամանակս իսկ կայ եղեր ազգ մը անդ՝ ուր իր հայրենիքն է, որ զինուորական արդեամբք և զարգացման արդասեօք ժամանակակցաց մէջ նշանաւոր դիրք մը ստացեր է։ Այս հայրենասիրական քաջալերիչ զգածմանց բացատրութիւն և նշանակ էին սուգը և սգալից արտայայտութիւնքը զորս կատարեց ազգս ի վերայ մահու աշխար-

հաքարող հնախօսին Անդրէի Դաւթի Մօրթմանայ, որ երկար աշխատասիրութեամբ և ճարտար մեկնութեամբ հոգնեցաւ Վանայ բեւեռագրոց վրայ և մեր հայրենական մեծութեանց աւանդական փաստեր ընձեռեց մեզ։ Իրաւամբք կը սիրէինք մեք զնա և իրաւամբ ողբացինք նորա կորուստը, որ օտարազգի ըլլալովն հայազգեաց աւանդութիւնը լուսաւորեց. Հայ սիրտը չէր կրնար անտարբեր մնալ այդպիսի դէպքի մը վրայ։ Կը յուզին ևս Հայուն սուրբ անձնասիրութեան խղճերը երբ կը կարդայ Նիկերոնեան պերճախօսութեան տողերը որք մերոյս Տիգրանայ փառքերը կը քարոզեն. և երբ կը տեսնայ թէ Հռովմի խրոխտ կայսերութիւնը՝ որ զաշխարհ ամենայն ողողեց, կարծես ամուր պատուարի մը հանդիպելով ընկրկեցաւ, երբ Հայաստանեայց թագաւորութեան դրաման թեւակոխեց։ Վստահութեան հոգին կարծես կ'արծարծի Հայկայ զաւակաց վրայ երբ կը կարդան սոքա թէ չորս հարստութիւնք իրարու ետեւէ հայկական իշխանութեան յաջորդութիւնը կազմեցին, և թէ բազդին արկածք որչափ և սաստիկ և դժոխըմբեր՝ չկարացին Հայուն սրտէն քանցել և հանել իւր անցելոյն աւանդութիւնը։

Կրնայի, սիրելի ունկնդի՛րք իմ, կրնայի բոլոր մեր պատմութեան նշանաւոր կէտերը յառաջ բերելով հաստատել, թէ Հայութիւնը ինչպիսի փառաւոր և յուսացուցիչ աւանդութիւն մը ունի, այլ զայն ամենայն գիտէք դուք, որոց համար ազգային պատմութիւնը անծանօթ բան մը չէ։ Բայց, աղէ՛, եթէ յաչաղկոտք մեր աւանդութեան փառաց և պատուոյն կը հակառակին, ես կը թողում իսկ իրենց բոլոր փառաւոր պարագաները, բայց իրենք ալ ընդունին և

թողուն մեզ մեր ազգային աւանդութեան գոյութիւնը · եթէ և աւանդութիւննիս փառաւոր չէ՝ մեք կրնամք զայն փառաւորել, ինչպէս կրնայ զաւակ մը փառաւորել իւր նախնոյն անփառունակ յիշատակը ։ Եթէ և ամեն փառք ուղեն մեզնէ կապտել, կամ թէ մեք յօժարակամ ամեն փառքէ հրաժարիմք, բայց անկապուտ է ժամանակին փառքը, երկարաժամանակեայ տեւողութեան փառքը, զոր մեր աւանդութիւնը մեզի կը ցուցնէ։ Եթէ Սինէական և Եգիպտական ազգաց հնութեան նկատմամբ զրուցուածները թողումք, որք պատմական յիշատակով մը չեն հաւաստիր, և մեզ ծանօթ սրբազան կամ արտաքին պատմագրաց վրայ յենումք, և այժմեան ազգախօսից գիտնական քննութեանց հետեւանքն իսկ ի նկատի առնումք, այնպիսի հին հնութեան մը կը հասնի Հայութեան աւանդութիւնը, ուսկից առաւելը և ոչ մի ազգ կրնայ այսօր Հայուն դիմագրել ։

Այս իսկ շատ է որ ազգի մը գոյութեան կէտը նուիրագործուի, և որք սոյն ազգութեան կը վերաբերին՝ իրենց ազգութեան զգածմամբը մխիթարուին ։ Պիտի մխիթարուիմք և մեք ամենայն իրաւամբ մեր աւանդութեանց յիշատակովը · վասն զի մեր անցեալ յիշատակը երկու գլխաւոր դասեր կուտայ մեզի · և այս են · առաջին թէ Հայութիւնը ի՛նչ աստիճանի ընդունակութիւններ ունի ազգութեան ասպարէզին մէջ · և երկրորդ թէ Հայութիւնը ի՛նչ աստիճանի տեւողականութիւն ունի չարադուշակ արկածից ասպարէզին մէջ ։ Երկուքն ալ բաւական են ոչ միայն զմեզ մխիթարել, այլ և քաջալերել և ի գործ յորդորել ։

Սակայն չքաւեր որ աւանդութեամբ միայն ազգութիւն մը մխիթարուի և քաջալերուի և ի գործ յորդոր-

ուի, հարկ է ևս որ բազմութեան պարագան ալ ճշմարտի, առանց որոյ գործելոյ ձեռքեր կը պակսին ։ Ազգ մը կազմելու համար կարեւոր թիւը որն ըլլալը՝ երբե՛ք կանոն մը կամ սկզբունք մը չորոշեց ։ Չորս հարիւր միլիոն ժողովուրդ՝ ազգ մը միայն կը համրուին ի Չինաստան, և իբր վաթսուն միլիոն Գերմանացիք զանազան պետութեանց սահմանաց մէջ բաժնուած, դարձեալ ինքզինքնին մի ազգ կը ճանաչեն. բայց և երկու միլիոն Դանիք առանձինն ազգ և առանձինն պետութիւն կը կազմեն յեւրոպէ. և այս թիւէն նուազ բազմութեամբ ազգութիւններ ալ կան այսօր աշխարհիս վրայ. ուստի չունիմք ամենեւին հաստատուն կանոն մը՝ որով ըսել թէ որն է այն բազմութիւնը՝ որ ազգութիւն մը կազմելու կարեւոր է ։

Սովորական առման համեմատ այնչափ ինչ թիւ կը պահանջուի, որ կարող լինի ինքն իրեն մէջ իրեն բաւական լինիլ, և հանիլ այն ամեն գործոց կատարման՝ որք ազգութեան մը պահպանութեան, կառավարութեան և զարգացման անհրաժեշտ ինչ են ։ Եթէ միլիոն մը կամ երկու ժողովուրդ, օրինաւոր, յառաջադէմ, բարեկարգ և նախանձելի ազգ մը և պետութիւն կրնան կազմել, ապա և Հայքս բազմութեան պայմանը լրացուցած եմք, ցորչափ չորս միլիոն ժողովուրդ մը կը հաշուիմք այսօր, ինչպէս ամեն կողմէն ի լոյս եկած մասնաւոր և հաւանական ազգահամարք՝ ամեն օր այս թիւը կ'ստուգեն ։ Ես կը կարծեմ թէ Հայաստան իւր փառաց ժամանակ և զօրաւոր իշխանութեան միջոցին շուրջ քառասուն միլիոնի ժողովուրդ մը ունեցած պիտի ըլլայ. և այս ալ կը հետեւցնեմ բանակաց թիւերէն, գործած քաջութիւններէն, ունեցած ազդեցութենէն,

տարածուած տեղերէն և այլ նմանօրինակ մակաբերութեանց փաստերէն. սակայն անցելոյն վրայ ո՛չ վիճել կ'ուզեմ և ո՛չ ալ ապացուցմանց դիզել։

Գալով մեր այժմեան թուոյն վրայ, չորս միլիոնի չափը, կարծեմ թէ շատ ալ համեստ է. միլիոն մը և կէս կը հաշուին Ռուսահայք, և այս հաշիւը տէրութեան ազգահամարներով կ'արդարանայ. միլիոն մը և քառորդ-դոնէ պէտք է հաշուել Օսմանեան Մեծ Հայոց բնակիչները՝ Կարնոյ, Վանայ, Բաղիշոյ և Տիգրանակերտի այժմեան կուսակալութեանց մէջ. միլիոն մի աներկբայ կը պարունակի Մնացեալ Օսմանեան գաւառաց մէջ, յորս կ'ամփոփին հին Փոքր Հայք, Պոնտոս, Կապադովկիա, Կիլիկիա և Եփրատացիք. և քառորդ միլիոն մըն ալ զանազան տէրութեանց մէջ սփռուած Հայոց համար հաշուել ամենայն հաւանականութեանց համեմատ է։ Թո՛ղ որ Օսմանեան կայսերութեան մէջ եղող Հայերը՝ որ մեք երկու միլիոն և քառորդ միայն հաշուեցինք, ըստ կարծեաց բազմաց երկու և կէս միլիոնէ ալ աւելի են։ Որն և ըլլայ վերջապէս ճիշդ թիւը՝ զոր չունիմք և՛ ոչ ուստեք, և եթէ ուզուի ևս մեր հաշիւը մասամբ իմն զեղչել և նուազեցնել, Հայութիւնը միշտ ունի այժմ և արդեամբ այնչափ բազմութիւն՝ որչափ կը բաւէ ազգութիւն մը կազմելու, և համարձակ ըսելու թէ Հայութիւնը ազգութիւն մի է։

Ընկերական մարդուն ընկերական կենաց իբր նշանակ լեզուն կը ցուցուի խորագոյնին իմաստասէրներէն։ Ոչ միշտ մարդն քաղաքական և գիւղական կենաց ընտելացաւ, և ոչ միշտ իշխանութեան դրութիւնը լիապէս ճանչցաւ. ընկերական մարդիկ ըսուեցան նաև կիսավայրենեաց թափառիկ վոհմակներ, քան թէ վրանա-

բնակ տուարածականաց խումբեր • ընկերական ըստւեցան և սանոնք որ ինքնագլուխ, ըստ ճիշդ բառին առման, ո՛չ իւիք իրենց գլուխ մը կը ճանաչեն • սակայն ընկերական չկարացին անուանիլ ո՛չ մրջնոց զարմանազան կազմակերպութեամբ յօրինեալ բազմութիւնը, ո՛չ կապկաց իրարու համաձայնութեամբ յարմարեալ բնակակցութիւնք, և ոչ համախումբ թռչնոց կամ ձկանց գունդագունդ միասնութիւնք ։ Այն բարձր պայմանը՝ որ առաջնոց կը շնորհէ, իսկ վերջնոց կը զլանայ ընկերականութիւնք՝ լեզուն է. այն միակ միջոցը՝ որով գաղափարաց իրարու հաղորդակցութեամբ գործակցութիւն կը ծնանի, և գործակցութենէ յառաջադիմութիւն կ՚արտադրի, և օրինաւոր կազմութիւն մը ապահովութեան ճանբայ կը բանայ ։ Դուք, ունկնդի՛րք իմ, գիտէք եթէ ընկերականութեան առ ոջին քայլը, արդիւնքը և նշանակէտը ազգութիւնն է, որով մարդիկ օրինաւոր և չափաւոր հնարաւոր և շահաւոր սահմաններու մէջ իրենց ընկերական բնութիւնը կ՚իրականացնեն • և ես առանց այս կէտին ալ ապացուցման վրայ դադարելու, մէկէն կ՚ստորասեմ թէ ազգութեանց առաջին և նախնական պայմաններէն մին ալ լեզուն է • և Հայութեան ալ սեփհական լեզու մը ունենալը՝ սեփհական ազգութեան թէ՛ ռահահորդն է և թէ՛ գրաւականը,

Ո՜հ, ինչչափ բան ունէի ըսելիք Հայ լեզուին վրայ խօսելով, սակայն այդ ինքնիրէեն մասնաւոր բանախօսութեան մը նիւթ կրնայ ըլլալ • և ես սոսկ կարեւորը հոս նշանակել ուզելով կը յիշեցնեմ միայն թէ Հայութեան լեզուն բաւական է լինել յարմար գործի այն նպատակին որուն պիտի ծառայէ, և կարող է ընձե-

ուել Հայ ազգին այն ամեն դիւրութիւնները և միջոցները՝ զորս ազգ մը իւր լեզուէն կ՚սպասէ ։ Գործի մը փոփոխ հաղորդակցութեանց, միջոց մը գրութեանց և թղթակցութեանց, գիտնական բացատրութեանց և զարգացմանց նպաստ, բանաստեղծական և գրագիտական զուարճութեանց օճան, պերճախօսական և փաստաբանողական ատենաբանութեանց յարմար, և աստուածահաճոյ փառաբանութեանց ի ճահ. լեզուն պիտի ծառայէ խօսելու, դաստիարակելու, զուարճացնելու, համոզելու և աղօթելու. և Հայերէն լեզուով այդ ամեն պիտոյք լիապէս կը կատարուին ։ Ուր գրոց լեզուն իւր խրթնութեամբ դժուարութիւն կը հանէ, խօսից լեզուն իւր պարզութեամբն կը նպաստէ. և ուր խօսից լեզուն իւր ցամաքութեամբն չգոհացներ, գրոց լեզուն իւր ճոխութեամբն կը զուարթացնէ և կը շարժէ և կը վառէ իսկ ։ Երկու լեզուք՝ որ հաւասարապէս մերն են, և որք իրարու հետ՝ թէ ոչ ծնողի և զաւակի առնչութիւն, գոնեա հարազատ երկուորեկաց հաւասարութեամբ՝ լծակցեալ և միացեալ են, իբրև ընտիր ամոլք ընդ միով լծով ազգութեան՝ կը յառաջացնեն աներկեւան և հաստատ քայլիւք մեր ապագային իմանալի սայլը ։ Բացատրութեանց չեմ մտնար, և խօսիցս ստուգութեան փաստերը յառաջ բերելու հոգը՝ ձեր մտաց կը յանձնեմ, որոց դիմաց այս վայրկենիս մէջ կը շարուին հետզհետէ՝ մեր Նախնի մատենագիրք և արդի հեղինակք, գեղեցկութիւնք, ասացուածոց անուշութիւնք, գիտութեանց բարգաւաճումք և դարուս սեփհական՝ գործնական լեզուի մը հանգամանքը. և դուք ձեզէն կ՚ըզգայք թէ ինչպէս իրաւամբ կրնայ պանծալ և պարծենալ Հայազգին թէ ինքն ունի այն լեզուն՝ առանց որոյ

ազգութիւն մը ո՛չ գոյութիւն ունի և ոչ յառաջադիմութիւն կրնայ ունենալ ։

Բայց յառաջեմք և եւս ազգութեան պայմանաց մէջ։ Ինչ որ ազգութիւն կ'անուանեմք՝ պարզ գաղափար մը չէ և ոչ կացութիւն մը ․ զինքը գոյ ընելու համար հարկ եղող աւանդութիւնք, բազմութիւնք և լեզուն, եղանակաւ իմն իրեն մարմինը կը կազմեն, միացեալ եւս կեդրոնի մը պայմանին հետ, որով աշխարհ կամ հայրենիք մը ունենալու հարկը կ'ուզեմ արտայայտել։ Փա՛ռք Աստուծոյ, որ լսարանիս մէջ մէկը չկայ, որ Հայ աշխարհին գոյութեան վրայ երկբայի, և բանախօսիս հարկ ըլլայ բացատրել և հաստատել՝ թէ ինչպէս երկիր մը կայ յառաջակողմն Ասիոյ, ի ծայր Նախածանօթ աշխարհաց և ի սկիզբն յետոյ ի ծանօթութիւն եկեալ երկիրներու, զոր Վրկանայ, Եւքսինեան, Միջերկրեայ և Պարսկային ծովեր կը պատեն ի հեռուստ, զոր Եփրատ և Տիգրիս, Կուր և Երասխ կ'ոռոգանեն, Մասիք և Տորոսք կը պաշտպանեն, Բզնունեաց, Գեղամայ և Որմեայ ծովակք կը զարդարեն, որ մեծաքանչ արարոց թատրոն հանդիսացաւ, և ամենուստեք յորդեալ անսանձ ջուրերու առաւթուր ասպարէզ եղաւ, ուր փառք ցոլացաւ և թշուառութիւն թագաւորեաց փոփոխակի, ուր ժողովուրդ նոխ և բազմաթիւ իւր անունը պայծառացոյց, և ուստի բազմամբոխ գաղթականք ի տարաբաղդ արկածից հալածեալք օտար երկիրները լեցուցին, և ում կը տենչան վայրավատին դաղթելոցս իղձք անշիջանելիք։ Այդ երկիր Հայութեան աշխարհն է և Հայ ազգութեան հայրենիքը․ որուն Հայն ժառանգական տէրն է, և զոր համարձակ առաջի համաշխարհական ատենից կը պահանջէ և ամենայն իւր զօրութեամբը կը բողոքէ,

երբ սխալմամբ կամ չփոթմամբ այլ ոք այդ երկրին կամ անունը կը փոխէ կամ խառնակ ծանօթութիւն մը կուտայ ։ Հայուն Հայաստանը անբռնաբարելի է , թէպէտ և իւր սահմանաց մէջ օտարք մտած ըլլան , կամ բնիկք օտարացած , կամ սահմանագլխոց գիծերը աւրուած ։ Եթէ և դժբաղդ և վատաբաղդ է մեր Հայրենիքը , մերն է տակաւին . և մեք մեր բաղդին դէմ չեմք բողոքեր , այլ միայն կը խղճամք իւր խեղճութեանց , կը ցաւիմք իւր ցաւոց , և կը ձայնակցիմք իւր ողբոց և արտասուաց ։ Ո՜հ , բնաւ իսկ նախանձելի չէ այն վիճակը յորում կը գըտնուի Մայրս մեր Հայաստան . իւր զաւակունքը մասամբ հեռացեալ , իւր բնակարանը կիսաւեր , իւր հագուստները ցնցոտի , իւր մարմինը վիրալից . չերեւիր նա ա՛յլ ես իբրու զբաղմիկ մանկամարդ , յառոյգ դեղ երեսացն պանծացեալ , բեհեզիւ պճնեալ և թագիւ պսակեալ , և ականակուռ զարդուցն փարթամութեամբ ամենից սքանչալի լեալ ։ Այլ , բաբէ՜ , միթէ՞ գեղեցկութիւնն և զարդարանքն են՝ որ մօր մը արդիւնքը և յարգը կը կազմեն ։ Մեզ բաւ է զի կենդանի է մերս Հայաստան . մեր ազգ.ութեան գոյ ըլլալուն համար հարկ է մեզ մեր երկիրը , մեր աշխարհը , մեր հայրենիքը , մեր կեդրոնը ունենալ . և շատ է մեզ զի մեր այժմեան վիճակին մէջ ալ կրնամք զայն մատնանիշ ընել մեր զաւակաց և օտարաց հաւասարապէս , և դէպ յարեւելս կարկառելով ձեռօքնիս՝ կրնամք պարզերես ըսել և համարձակ երկրորդել . Ահա՛ մեր ազգութեան կեդրոնը ։

Աւանդութեան , բաղմութեան , լեզուի և կեդրոնի պայմանները բացատրելով՝ մեր ազգութեան գոյութեան նկատմամբ , իբր թէ արտաքին մարմնոյն իրականութիւնը ցուցուցինք . անցնինք և սակաւուք ներ-

քին հոգւոյն ալ իրականութիւնը ցուցնելու. զի այսպէս կ'անուանեմ ես կազմակերպութեան, նպատակի և յօդակապութեան պայմանները, որք ոչ այնչափ նիւթական մասանց, որչափ բարոյական յարաբերութեանց վրայ կայացեալ են։

Ունիմք ուրեմն ազգ մը որ աւանդութեամբ իւր կատարեալ ազգութեան խիղճն ունի, որ բազմութեամբն ազգութենէ մը պահանջեալ գործոց կրնայ հանիլ, որ լեզուովը ամեն յարաբերութիւնները արդիւնաւորել կարող է, որ աշխարհաւ ունի կեդրոն մը ուր հաստատուիլ և ասպարէզ մը ուր գործել. սակայն երբ այս ամենը ունենամք՝ տակաւին կատարեալ ազգութիւն մը ունեցած չեմք ըսուիր. պէտք է գըլխաւորապէս որ այդ ժողովուրդին մէջ ուրոյն և սեփհական կազմակերպութիւն մը տիրէ, որ իրեն մասնաւոր կացութիւն մը շնորհէ և իր ներքին գործունէութեան ներքին շարժմամբը զարգանալու դիւրութիւն ընծայէ։ Իրը ըստ ինքեան յայտնի է. իսկ մեր ազգութեան համար, ասկէ աւելի իրական պայման մը ցուցնել հնար չէ։

Բաւական է անգամ մը աչք նետել մեր ազգային Պատրիարքարանին կազմակերպութեան վրայ, որոյ ի գլուխ կը բազմի իշխանաւոր մը՝ որ ոչ թէ հոգեւոր գլուխ մի է միայն, այլ և ազգապետ և ազգային վարչութեան գլուխ, որոյ շուրջը կը բոլորին վարչական ժողովք և ստորակարգեալ խորհուրդք՝ որոշեալ գործովք և կանոնովք. ունիմք ազգ մը որ ընտրողական քուէիւ և ընտրելիութեան իրաւամբ՝ բարձր և օրէնսդիր և համարատու ընդհանուր ժողով մը ունի, որ սահմանադրական օրինօք կը կազմուի, կը գործէ, և կը դատէ,

օրէնքները կը բարեփոխէ և օրէնքներ կը հաստատէ ։
Կեդրոն մը կայ բոլոր ընդհանուր ազգային գործոց ․
և մասնաւոր կեդրոններ տեղական իրողութեանց՝ գա-
ւառաց մէջ , որք ըստ մասին ազատ կառավարութեան
սկզբանց և ըստ մասին կեդրոնական միաւորութեան օ-
րինաց համեմատ բարեխառնեալ՝ գաւառական օրէնք
մը ունին , և անոր ենթարկելով սահմանադրական ընտիր
դրութեան օգուտները կը վայելեն ։ Եւրոպական կա-
ռավարութեանց հետեւած օրէնքներն հաւասարապէս
նոյն հիմանց վրայ հաստատուած են՝ որոց վրայ և մեր
ազգին օրէնքները կը հանգչին ․ անոնց ներքին կազմա-
կերպութիւնն ալ տարբեր դրութեան վրայ հաստատեալ
չէ , քան ինչ որ մեր ազգը իրեն սեպհականած է ․ և
եթէ այդպիսի կազմակերպութիւն մը օտար ազգաց
պարծանքն է՝ և իրենց ներկայ և ապագայ յառաջա-
դիմութեան երաշխաւորութիւնն է , ինչո՞ւ ուրեմն մեր
կազմակերպութիւնն ալ չբաւէ տալ մեզ այն վստա-
հութիւնը և ճշմարտել ի մեզ այն պայմանը , որովք
ազգութիւնք կը լինին և կը գործեն ։

Թերեւս ըսուի թէ այդ կազմակերպութիւնը չտա-
րածուիր արդեամբ այն ամեն անհատներու և խումբ-
բերու վրայ , զորս մեք ի վեր անդր ներկայացուցինք
իբր ամբողջական մասեր այն բազմութեան՝ որ նոյն ազ-
գութիւնը կը ձեւացնէ ։ Սահմանադրութիւնը կը միա-
ցնէ միայն այն Հայերը՝ որք Օսմանեան կայսերութեան
ներքեւ և Հայաստանեայց եկեղեցւոյ հպատակ են ․ ո-
րովք դուրս կը մնան այն Հայերը որք կամ Օսմանեան
կայսերութեան ներքեւ չեն , կամ Հայաստանեայց ե-
կեղեցւոյ հպատակ չեն ։ Այդ խորհրդածութիւնը ստոյգ
է ․ և այնչափ՝ որ ես իսկ զայն ի սկզբանէ նախատեսելով

կազմակերպութեան պայմանին քով յօդակապութեան պայմանն ալ կցեցի, և այս ալ այդ նպատակաւ միայն։ Որովհետև ոչ ամենայն մասունք կազմակերպութեան զօրութեամբ ամբողջովին կը միանան, պէտք մը կը ծնանի ասկէ. ոչ թէ մեզ միայն, այլ ամեն ազգութեանց հաւասարապէս, որ՝ այդպիսի մասունք ունենան եղանակ մը, որով կազմակերպեալ մարմնոյն հետ միաւորին, իրենց գործակցութիւնը անոր բերեն, և անոր ազդեցութիւնը իրենք ալ վայելեն։ Այդ յօդակապութեան ալ կերպը գիտեմ որ մէկ հատիկ միայն չէ, և մեք արդեամբ կը տեսնեմք թէ կերպ կերպ ճամբաներով յարաբերութիւններ ստացած եմք, և ընդարձակել կը ջանամք։ Բարեբաղդաբար այն մասունք որք՝ թէ ոչ Օսմանեան քաղաքական հպատակութեամբ, գոնէ Հայկազնեան հոգևորական հպատակութեամբ միացեալ՝ մեզի աջակից և եղբայրակից են, այնպէս մեզի հետ միացեալ և մեր ազգութեան հոգւոյն և ըղձից, ջանից և աշխատութեան, գործոց և նպատակից մասնակից են, որ հնար չէ մեր և նոցա մէջ իրական անջատում մը հետևցնել՝ պատճառելով թէ վերոյիշատակեալ ազգային կազմութեան մասնակից չեն նոքա։ Ազգային եռանդն այնպիսի իմն գործող է՝ որ իրական արգելքներն ալ գիտէ յաղթել, և բնական դժուարութիւնները յաղթահարել. և որպէս զի ազգութեան շահը յառաջէ, դիտէ ճարտար հնարիմացութեամբ նորանոր եղանակներ գտնել։

Մինչ սոյն առթին մէջ, մեր և նոցա եռանդեան հարկ իսկ չկայ ճարտարահնար գիւտերու դիմել. վասն զի մեք և նոքա հաւասարապէս կը միանամք և կը յօդակապիմք իշխանութեամբ լուսաւորչահիմն կաթողիկոսական աթոռոյն Ամենայն Հայոց, որ այնչափ կը բար-

ձրանայ ի ծանրակշռութեան մասին, և այնպիսի ազգու-
ներգործութիւններ կ'առանայ արդեամբ, որ ոչ թէ
Հայութիւնը եկեղեցի մը կը ձեւացնէ, այլ Հայ եկե-
ղեցին ազգութեան կը փոխարկէ, և ամենայն Հայ սրտի
իւր ազգութեան վրայ սէր կ'արծարծէ, և իւր ազգու-
թեան վրայ հաւատոյ հաստատութիւն կը հեղու։

Իսկ թէ զիա՞րդ հնար է՝ մեր ներկայ դրից մէջ
կազմել ամբողջական միաւորութիւն մը այն ամեն տա-
րերաց՝ որք իրենց Հայութիւնը կը ճանչնան, և Հայու-
թեան հետ ի միութեան կը ցանկան մնալ, բաւական
խօսեցայ երբ Հայութեան միութեանը վրայ ատենա-
բանեցի, և յայտնած գաղափարներս ծանօթացան թէ՛
ունկնդրաց և թէ՛ ընթերցողաց զայնս· և ի զուր է կրրկ-
նել ինչ որ արդէն ձեզ և ս կրնայ ծանօթ եղած ըլլալ։

Ազգութիւնը՝ որպէս զի ամեն կարեւոր հանգա-
մանօք ճոխացեալ ըլլայ, նպատակի մըն ալ պէտս ունի·
առանց նպատակի տարտամ են աշխատութիւնք, ան-
պտուղ են ջանք, ընդվայր են ձգտմունք, և ի զուր են
բոլոր ցարդ յիշեալ պայմանաց ներգործութիւնք և
ազդեցութիւնք։ Ամեն ազգութիւն իրեն նպատակը
որոշեալ ունի· թէ խառնակ է՝ ձեւակերպուիլ, թէ ձե-
ւակերպեալ է՝ հաստատուիլ, թէ հաստատուած է՝ յա-
ռաջանալ, թէ յառաջացած է՝ պայծառանալ։ Ո՞ր նպա-
տակը պիտի սահմանեմք մեք մեր ազգութեան։ Պա-
տասխանը ենթադրութենէն կը կախուի։ Ինչ վիճակ
որ կը սահմանեմք Հայութեան, իրեն նպատակն ալ նոյն
վիճակին հետեւանքը կ'ըլլայ· իսկ վիճակը սահմանելու
մէջ, կը խոստովանիմ, թէ նոյն իսկ ազգասէր և ազ-
գագէտ անձինք ո՛չ ամենեքին համակարծիք են. և մինչ
ոմանք շատ յոռի կը տեսնան, այլք լաւագոյն կը հա-

մարին · մինչ ոմանք չափաւորութեամբ շարժուելով համեստ նպատակներով կը գոհանան, այլք առաւել խրախուսիւ բարձրագոյն նպատակի մը ակնկառոյց լինել կը համարձակին։ Երբ անոնց վրայ կը խօսէի՝ որք չափաւորութիւնը յուսահատութեան և համեստութիւնք վատութեան հասցնելով՝ Հայութեան ազգութիւն մը ըլլալուն կը հակառակին, համարձակ իրենց դէմ կըքրեցայ, և մանրամանութեանց մտնելով ուզեցի փաստաբանել՝ թէ Հայութիւնն արդեամբ և իրաւամբ ազգութիւն է և այնպէս պէտք է համարուի · սակայն երբ այս ազգութեան նպատակին ծրագրին և սահմանին վրայ կը խօսուի, — որովհետև տարաձայնութիւնը նոյն ինքն ազգասիրաց մէջ է —, չեմ ուզեր նոյնպիսի խստութեամբ վճիռ հատանել, և մի կամ միւս կողմը նախանձայուզութեամբ հերքել։

Սակայն ոչ վասն այսորիկ կընամ իմ կարծիքս ծածկել, և ոչ միայն կամ միւսոյն ակնառելով կարծիքս փոփոխել։ Ես այն դասուն կը պատկանիմ՝ որ ազգին վիճակը անանկ յուսահատ կամ թէ սակաւայոյս չեն տեսներ. և ինչպէս ուրիշ լսարաններու մէջ ալ առիթ ունեցայ յայտարարել, Հայութեան՝ անցելոյն մէջ կրած դժբաղդութիւնները և ներկայիս իսկ իւր վրայ ծանրացած թշուառութիւնները զիս աւելի մեծայոյս կ՚ընեն քան թէ յոյս կը պակսեցնեն։ Թո՛ղ անոնք որ Հայութեան տարաբաղդ արկածից վրայ կ՚ողբան, իրենց ամենէն տխուր գոյները ձեռք առնուն Հայաստանը և Հայութիւնը եղկելի և արտասուելի նկարելու · թո՛ղ իրենց եղերերգական գրիչը գործածեն ողբեր գրելու. ես Հայութիւնը կը նկատեմ իբր մի թշուառ և հիւանդագին անձն, որ ապաքինելու և իւր գործերը կար-

դադրելու սկսած է, որ ի մօտոյ առողջ և բարեկեցիկ ըլլալուն վրայ ապահով է, և որոյ կեանքը ամենուն վտանգի նշան մը ցոյց չտար։ Այդպէս է առնուազն Հայութիւնը, եթէ չափաւորութեան մէջ ուզեմք առատանալ, թէպէտ ես անձնականաբար այդչափ առատանալու իսկ մտադիր չեմ։

Իմ միտքս ճշդիւ բացատրել, և Հայութեան նպատակը որոշելու մասին հարկ եղած նախընթաց կէտերը հաստատել և Հայուն սահմանեալ նպատակին հասնելու կարեւոր միջոցները պարզաբանել, կը պարտաւորեմ զիս դեռ ուրիշ գաղափարներ յայտնել, զորս ի դիւրութիւն իմ և ձեր, երկրորդ մասի մը նիւթ պիտի ընեմ, համառօտ դադարմանէ մը վերջը, զոր Ձեր հաճութեամբ պիտի առնում։

Հայութիւնը, Տեա՛րք իմ և Տիրուհի՛ք, առաջին մասին մէջ զրուցածներնուս համեմատ լիապէս կը պարունակէ այն պայմանները, որովք ազգութիւն մը կը կազմուի. վասն զի ունի այդ աստիճանին համար պահանջուած աւանդութիւնը, բազմութիւնը, լեզուն, կեդրոնը, կազմակերպութիւնը և յօդակապութիւնը, և ասոնց հետ մէկտեղ նաև նպատակը։ Ուրեմն Հայ ազգութիւն մը կայ։ Այդ ճշմարտութիւնը ո՛չ նոր է և ո՛չ նորալուր. ամեն ազգային զայն իր սրտին մէջ կը զգայ; և ես զայն կը յիշեցնեմ միայն որպէս զի յայտնեմ թէ ազգութիւն բառը չեմք գործածեր մեք անճիշդ գործածութեամբ առեալ՝ որ և իցէ ժողովուրդ մը իմացնելու համար, այլ ճշդիւ այն քաղաքական և ճիշդ

ուժամբ , որով այժմ գործածել սովորութիւն եղեւ ։

Այդ ազգութեան նախնական և անձեւ կերպարանը միայն մեզի սեփհականել, ըստ իս ճշմարտութենէ հեռի է ․ և զայս ըսելով չեմ կարծեր թէ անձնասիրութիւնը միտքս շլացնէ · վասն զի չորս կողմն նայելով , և մեր ազգին ներքին հանգամանքները քննելով , իրեն կատարած գործերը կշռելով , իրեն ցուցուցած արդիւնքները նկատելով , իրեն վայելած անունը և համբաւը տեսնելով , մէկ խօսքով՝ իրեն ունեցած աստիճանը գիտնալով , չեմ կրնար երբէք ըսել թէ Հայ ազգութիւնը անձեւ և անկերպարան ազգ մի է , որուն պէտք է նորէն ազգութեանց սեփհական եղող օրինական ձեւը տալ ։ Եւ առ այս բաւական է արդարեւ՝ անձեւ և անկերպարան եղող ազգաց դիրքը անգամ մը քննել և իմանալ , և վերջէն Հայ ազգութեան վիճակին հետ բաղդատել · այն ատեն լաւ կ'իմացուի թէ ինչպէս բարձրագոյն և լաւագոյն է Հայութեան վիճակը ։ Այդ բաղդատութիւնը ես հոս ընելու համար պարտաւոր պիտի ըլլամ մասնաւոր անուններ յիշել, որ կարի դժպհի պաշտօն մի է, մանաւանդ թէ տեսութեամբ լուիք ևս անվայել · ուստի կը խնդրեմ որ զիս այս հարկէն ազատ համարիք , և դուք ձեր մտաց մէջ կատարէք այն բաղդատութիւնները՝ զորս ես այս բեմէս ընելու կը քաշուիմ ։

Եթէ ձեւ և կերպարան տալու նպատակը մեզի քիչ է , վասն զի ազգութեան ձեւը և կերպարանը ունիմք , կարգը կու գայ որ ունեցած ձեւը հաստատելու ետեւէ ըլլամք , և գոնէ զայդ իբր նպատակ ընդունիմք մեր ջանից և աշխատութեանց ։ Այդ երկրորդ կէտին գիմաց նուազ են իմ դժուարութիւնքս , և մտադիւր իսկ թերեւս այդ կէտին պիտի համաձայնիմ , միայն թէ

սխալ և ծուռ իմացումներէ գիտնամք զգուշանալ ։

Ես չեմ անգիտանար թէ քանի մը տարիէ ի վեր նոր շարժում մը սկսաւ Հայ ազգութեան մէջ, և այս շարժման նպատակն ալ ուրիշ բան չեղաւ և չէ, բայց եթէ Հայաստանի կառավարութեան համար նորոգեալ և բարեփոխեալ ձեւ մը ստանալ ։ Այդ ձեւը ձեռք ձգելու համար սկսան Բարձրաշնորհ Ազգասէր Պատրիարք Հօրս մերոյ դիւցազնական առաջին քայլերը․ այդ ձեւոյն համար յօրինուեցաւ այն ծրագիրը՝ որ պաշտօնապէս հաղորդուեցաւ Պետութեանց․ այդ ձեւոյն կը դիտէր նախնական դաշնագրին 16դ. յօդուածը․ այդ ձեւոյն համար թղթակցութիւններ՝ պատգամաւորութիւններ և թախանձանքներ ուղղեցան առ համագումար ժողով մեծամեծ Պետութեանց․ այդ ձեւոյն նպաստաւոր դատուեցաւ նոյն վեհաժողովոյն 61դ. յօդուածը․ այդ ձեւոյն համար է որ Հայոց սիրտեր անձկանօք կը բաբախեն․ վասն զի այնպէս համոզուած են, թէ այդ ձեւոյն դեռ. կատարելապէս չհասանք ։

Ի՞նչպէս ուրեմն ես կրնամ պնդել՝ թէ ոչ երբէք ձեւ մը ստեղծելու պիտի աշխատիմք մեք Հայութեան համար, և թէ նա իւր ձեւն ստացեալ ունի, որովհետև ազգութեան կարեւոր պայմանները ունի՞։ Լսեցէ՛ք ուրեմն, ունկնդի՛րք իմ, իմ մտացս ճիշդ բացատրութիւնը։

Ես գիտեմ թէ մեր Հայութեան ձեւ մը տալու ճիգը կայր և կայ տակաւին, և այդ ճգանց մասնակցողներ ձեր մէջն ալ շատ կան․ և ես իսկ ուր առիթ բարեպատեհ ձեռքս ինկաւ չկասեցայ այդ ազգասիրական գործոյն, թէ ոչ ուղղակի և անմիջապէս, գոնէ անուղղակի և միջնորդաբար ընկերակցիլ ըստ իմում տկարութեան։ Հայաստանի ձեւ մը տալ էր այդ աշխատութեանց նպա-

տակը, և ոչ թէ Հայոցս՝ ազգութեան ձեւը տալ. վերջինը կը պնդեմ թէ ունիմք. առաջինը կը բաղձամ և կ'աշխատիմ և ես որ ունենամք։ Մանաւանդ թէ Հայաստանի կառավարութեան՝ աւելի օգտակար և աւելի օրինաւոր ձեւ մը տալու խնդիրը նախընթացաբար կ'ենթադրէ թէ Հայութիւնը ազգայնութեան ձեւը ունի. զի եթէ չունէր՝ և ոչ իսկ հնար էր յանուն նորին այդպիսի բարեկարգութիւններ և բարենորոգումներ խնդրել։ Բոլորովին տարբեր պէտք էր որ ըլլային մեր խնդիրը և մեր ծրագիրը, եթէ մեք և նոքա և աշխարհ ամենայն իբր կանխաւ ցուցեալ կամ ընկալեալ չենթադրէինք թէ Հայութիւն մը կայ, որ ազգութեան կարեւոր պայմաններով ճոխացեալ է, որ և իբր բաւական ի գործ և յարդիւնս՝ կարող է յասպարէզ հրաւիրուիլ, իբր նշանաւոր և զօրաւոր մի տարր արեւելեան աշխարհաց, մանաւանդ թէ իբր գլխաւոր և երեւելագոյն ի մէջ հին ասիական ազգութեանց, ինչպէս արեւմտեան հեղինակք և քաղաքագէտք չերկուայան անուանել Հայ ազգութիւնը։

Ինչ որ մեք ուզեցինք և պահանջեցինք, և ցարդ իսկ կ'ուզեմք և կը պահանջեմք, և մեր Ազգանուէր Պատրիարքը՝ Թարգման ըղձից և բաղձանաց բովանդակ Ազգին և մտաց Երեսփոխանական ժողովոյ, պաշտօնապէս կ'ուզէ միշտ և կը պահանջէ, մեր ազգութեան ո՛չ թէ ձեւակերպիլն է, այլ հաստատուիլը. վասն զի այն օրէն որ Պատրիարքական և Ազգապետական, Վարչական և Օրէնսդրական ազգային բարձր իշխանութեանց քով, Հայաստանի մէջ Հայ կառավարութեան մուծուիլը օրինադրուի և գործադրուի, Հայ ազգութիւնը կրկին և կրկին հաստատուելով պիտի զօրանայ, վերստին կեն-

դանութիւն թերեւս պիտի ունենայ, այլ ոչ թէ ա-
ռաջին եւ նախնական կենդանութիւնը· այդ առաջին
կենդանութիւնը նոյն ինքն գոյութիւնն է· վասն զի
ազգութիւն մը նովին իսկ որ կայ՝ կ՚ապրի եւս· եթէ
կ՚ապրի՝ կը շարժի· եթէ կը շարժի՝ կը գործէ· եթէ կը
գործէ՝ կը յառաջէ· եթէ կը յառաջէ՝ կը պայծառա-
նայ՝ եթէ կը պայծառանայ՝ կ՚արդիւնաւորի· եթէ
կ՚արդիւնաւորի՝ օգտակար եւ պտղաբեր կ՚ըլլայ· եւ
ահա ուր կը յանգի վերջապէս մեր ազգութեան նպա-
տակը, որուն սկիզբը այն պարզ գոյութիւնն է, եւ
ուստի շղթայաբար յառաջելով տիեզերահռչակ փա-
ռաց եւ ազգօգուտ զարգացմանց գագաթը կը հասնի։

Ես այս ամենը հաւասարապէս եւ միանականա-
պէս մեր ազգութեան նպատակը գիտեմ, պահելով
միայն այն բնական եւ բարոյական կարգը եւ ժամանակը՝
որ այդ սանդխաձեւ ելքին մէջ կը ճշմարտին։ Երբ այդ-
պիսի սանդուխի մը ծայրը ելլալու ըլլաս, նպատակդ-
անոր գագաթը հասնիլն է, ինչպէս նաեւ բոլոր սան-
դուխները մէկ մէկ ելլալն է, եւ ինչպէս ես անմիջա-
պէս առջեւդ եղած սանդխին աստիճանը ելլալն է։ Ոչ
թէ երբեք տարբեր նպատակներ ունիս դու այդ գոր-
ծոյդ մէջ, վասն զի երեքն իրարու հետ շղթայաշար մի-
ացեալ են, եւ մէկը միւսոյն հետ ոչ թէ կապուած է
միայն այլ եւ անոր մասն է· եւ մին ընելով միւսն ալ
ըրած կ՚ըլլաս։ Ասոր համար կ՚ըսէի առջի մասին վերջը
որ եթէ ազգութիւն մը չփոթ է՝ ձեւակերպելու է. եթէ
ձեւակերպեալ՝ հաստատելու է, եթէ հաստատեալ՝ յա-
ռաջացնելու է, եթէ յառաջացեալ՝ պայծառացնելու
է, ճիշդ այն կերպով որ մէկը կրնայ ըսել· թէ առաջին
աստիճանը ելած ես, երկրորդը ելլալու է· թէ երկրոր-

դը ելած՝ երրորդը ելլալու ես․ թէ երրորդը ելած՝ չորրորդը, և այսպէս յաջորդաբար, մինչև որ զինքդ սանդուխին գագաթը գտնաս՝ որուն կը դիմես։

Հոս կը դադարեցնեմ խօսքս այնպիսի նիւթի մը վրայ որուն նկատմամբ երկարաբանել թէ՛ անօգուտ է և թէ՛ ձանձրացուցիչ, իբր զի ինքնիրեն յայտնի և ամենուն ծանօթ կէտ մի է․ մանաւանդ որ եթէ կարծեաց տարաձայնութիւն իսկ կարենայ տեղի ունենալ, այդ տարաձայնութիւնը չկրնար մեր ընելու գործոց վրայ տարբերութիւն բերել․ անուն թերևս կրնամք փոփոխել, կարգը թերևս կրնամք այլայլել, այլ ինչ որ իրօք և արդեամբ պէտք է որ ըլլայ, և պէտք է որ ընեմք՝ միշտ նոյն կը մնայ և մեք ի զուր վիճաբանած և ի զուր չունչ յոգնեցուցած կը գտնուիմք։ Երբ միտուընիս կը դնեմք թէ ազգութիւն մը ունիմք, և երբ հաստատութեամբ գիտեմք թէ այդ ազգութիւնը պիտի հաստատեմք՝ յառաջացնեմք և պայծառացնեմք, և երբ յաւելումք իսկ թէ հաստատելու՝ յառաջացնելու և պայծառացնելու միջոցները բնականաբար իրարմէ տարբեր չեն, այլ մի և նոյն գործոյ զանազան աստիճաններն են, միթէ աւելորդ չէ՞ այդպիսի իմացական տարբերութեանց և տրամաբանական խնդրոց վրայ վէճեր յուզել և տարաձայնութիւններ գրգռել։

Լաւագոյն է ուրեմն որ բոլոր մեր ուշը դարձընեմք այն միջոցաց վրայ, և ամենայն անաչառութեամբ քննեմք, թէ ինչչափ աշխատած եմք ցարդ անոնց նկատմամբ և ինչչափ ալ դեռ ընելիք ունիմք, որպէս զի Հայ ազգութիւնը հաստատուի, յառաջանայ և պայծառանայ։ Այո՛, երեք աստիճանն ալ ի միասին մէջ տեղ կը դնեմ, այսպէսով տեսակէտնիս կ՚ընդարձակի․

իղձերնիս կը բարձրանայ, միտքերնիս կը հրճուի, և ջան-
քերնիս կը քաջալերուի։ Գեղեցիկ ապագայ մը շլացուցիչ
է, բայց և յորդորիչ միանգամայն. այնչափ աւելի մտա-
դիւրութեամբ կ՚աշխատի ոք, որչափ աւելի ընտիր ար-
դիւնք կը դիտէ քաղել իւր աշխատութենէն։

Միջոցներ մէկ չեն և ոչ քիչ. անձնիւր ի ձէնջ
քննելով՝ թէ որչափ գործեր կը կատարէ, կամ յորդոր-
եալ է կատարել իւր ազգասիրական ըղձից յագուրդ
տալու և իւր ազգային պարտաւորութեանց հաւատա-
րիմ գտնուելու համար, մէկէն կ՚իմանայ թէ ոչ ան-
համար՝ գոնէ բազմաթիւ գործեր կան զորս ընել հարկ
է, եթէ կ՚ուզեմք նոյն ազգութեան ապագայ բարւո-
քումը։ Ինձ և ձեզ դիւրութիւն մը ընծայելու նպա-
տակաւ, ես կը մտածեմ թէ այդ բազմազան և բազմա-
թիւ միջոցաց կարգ մը դնելու, և զանոնք աւելի դիւր-
ըմբռնելի կերպով հասարակաց ուշադրութեան ընծա-
յելու միայն եղանակն է, պինդ ունել այն պայմանաց
բաժանմունքը զորս մեր ազգութեան գոյութիւնը հա-
ւաստելու համար իբր փորձաքար գործածեցինք առա-
ջին մասին մէջ։ Եւ ոչ վայրապար. եթէ պարագայ մը
ինք իրեն գոյութիւն կու տայ, նոյնն դարձեալ յա-
ռաջադիմութիւն կու տայ և պայծառութիւն կ՚աւել-
ցընէ անշուշտ. եթէ պատճառ մի է նա որ որոշեալ
արդիւնք մը կը պտղաբերէ, երբ իւր պայծառութեան
զօրութիւնը և ազդեցութիւնը կ՚ընդարձակի, ի հարկէ
իւր արդեանց ալ ընդարձակութիւնը պիտի հետեւի։
Այդ ամենայն բնագիտական օրինաց իսկ սկզբամբք կը
հաստատուի։

Աւանդութիւն մը, այսինքն ազգային աւանդու-
թիւն մը փնտռեցինք մեք նախ՝ որ Հայ ազգութեան

գոյութիւնը փաստաբանեմք․ թո՛ղ ընդարձակի այդ-
աւանդութիւնը, թո՛ղ զօրանայ մեր սիրտերու մէջ Հայ-
րենի յիշատակաց ազդեցութիւնը, և նոքին իսկ յոր-
դորողք ըլլան այն զարգացմանց՝ որք մեր ազգութեան
կարեւոր են։ Որչափ և բանական հանճարոյ վիճակեալ
է մարդս ի բնէ, այսու հանդերձ չէ ոչնչացած ի նմա
մարդն ստորին, ինչպէս ոմանք կ'անուանեն, մարդն
որ բնական ազդմանց և ախորժակաց, ձկտմանց և
դրդմանց իշխանութեան կ'ենթարկի, և առանց իսկ
երկար պատճառաբանութեան, սոսկ բնական մղմամբ
բարոյական գործոց կը դիմէ․ վասն զի իւր ներքին
շարժիչ զօրութեան վրայ թէ՛ ունակական և թէ՛ բնա-
կան դարձած իղձ մը կամ բաղձանք մը անհակառա-
կելի ազդեցութիւն կը գործածէ։

Կ'ուզե՞ս որ ազգասէր ըլլաս և ազգասիրական
գործեր քեզի ախորժելի գան և անհակառակ ազգ-
օգուտ ձեռնարկներու մասնակցիս, փոյթ տա՛ր որ ազ-
գային աւանդութեան զօրութիւնը տիրանայ քու ներ-
քին կարողութեանցդ վրայ։ Երբ ազգային պատմու-
թեան յիշատակները ի մատաղ տիոց Հայ մանկտւոյն
սրտին մէջ կը տոգորուին, երբ չափահաս եղած ատենը
Հայ պատմութեան գիրքերը իրեն ձեռքէն չեն իյնար,
երբ տանդ և բնակութեանդ և ուրիշ տեղերու մէջ
ազգային պատկերներ և յիշատակներ ի տես և ի զարդ
դրուած քու իղձերդ կը զարթուցանեն, երբ ունենաս
տեղ մը, թանգարան մը, ուր մերթ ընդ մերթ այցե-
լելով կարող լինիս տեսանել և նշմարել քու հայրենեաց
նախնի մեծութեան նշխարները, երբ ազգային սրբա-
զան և քաղաքական տօնախմբութեանց առթիւ զուար-
ճութեանցդ հետ խառնուին անուշիկ հայրենեացդ

քաղցր անունը, և հնոց գիւցազանց պայծառ արարոց և ազգօգուտ ձեռնարկութեանց գովաբանական բացատրութիւնները, երբ բոլոր կենացդ մէջ չպակսին քեզ այնպիսի տեսարաններ և պատահարներ, որ քու ազգիդ և քու հայրենեացդ պատկերը մնացդ դիմաց արձանացուի, սորվ եղի՛ր, եղբայրդ իմ ի Հայկ, սորվ եղի՛ր, եղբայրդ իմ ի Գրիգոր, թէ դու առաւել ազգասէր կ՚ըլլաս, քան ինչ որ ես, աւելի փութաջան, քան որչափ որ կ՚աշխատիս։

Ի՞նչ աւելի սովորական բան, քան այն հայրենասիրական, և սակայն իսկ անարհեստ և խոշորագիծ պատկերները՝ զորս օտար ազգեր, և նաև մեզ դրացի ազգեր, ի վաճառ կը դնեն գիւղագնոյ ի պէտս ժողովրդեան, և յորս իրենց նախնի և արդի դիւցազանց քաջագործութիւնք ցուցուած են, յաճախ ևս առասպելական պարագայիւք խառնեալ։ Ո՛ւր էր թէ մեք ալ ունենայինք Հայկերու և Արամներու, Արտաշէսներու և Տիգրաններու, Վարդաններու և Վահաններու, Աշոտներու և Սմբատներու, Թորոսներու և Լևոններու, թո՛ղ անարուեստ, թո՛ղ խոշորագիծ պատկերները, զորս աղքատը և գիւղացին գիւրագնոյ ստանալով կարող լինէին իրենց գծուծ պատերուն վրայ փակցնել, և երբ մանկիկը կուլայ կամ կը խաղայ, անոր ցուցնել հայկազնոյն դէմքը, և անոր մեկնել դիւցազնոյն քաջագործութիւնը․ որպէս զի այն հասակէն գիտնայ մանկիկը թէ ո՛վ է իւր նախնին և ո՛ր իւր աշխարհը և անդստին ի խանձարրոյ կապուի անոր սիրոյն հետ։

Ի՞նչ աւելի ընտանի և դիւրին բան քան թէ ազգային երգոց գործածութիւնը։ Ժողովուրդը, ռամիկը՝ ինչպէս և ազնուականը, թէ՛ իւր անձնական ըղձից

բերմամբ, և թէ՛ ընդհանուր կամ ընտանեկան խրախութեանց առթիւ, սովոր է երգ մը նուագել. և երբ աղէկներ իրեն կը պակսին՝ նաև անվայելները կը գործածէ. և երբ ազգայինք թերանան՝ օտարաց երգերը կ'ընդունի։ Երգարանք և երաժիշտք գեղեցիկ ծառայութիւն մը կը կատարեն՝ թէ որ ազգը ճոխացնեն և հարստացնեն ի մասինս, և դաստիարակք և ծնողք թէ որ անոնց ընտելացնեն իրենց խնամոց ներքոյ գտնուող մանկտին։ Գողթան պուէտաց քանի մը տողերը, որք մեզ հասած են, արդ իսկ այնչափ դարերէ ետքը և իրենց ոյժը և աշխոյժը կորսնցնելէ ետքը, դեռ բաւական են սիրտերը արծարծել։ Ոչ բազմաթիւ եղեն անմահական Պէշիքթաշլեանի ազգասիրական երգերը. այլ սակաւաթիւն ալ բաւեց, որ ազգային աւանդութեան կրկին բորբոքմամբը՝ ազգը նոր յառաջադիմութեան քայլեր առնելու մղուեցաւ. և թէ այսօր հրդեհեալ է ամենուրեք, այն երգոց պզտիկ կայծն է որ կրակը վառեց։

Ազգային պատմութեան վարժարանաց մէջ ունեցած նախնական պէտքը չբացատրեմ. վասն զի զայն այսօր ամենայն ոք գիտէ և կը կրկնէ. այլ յիշեցնեմ միայն թէ ազգային պատմութեան տեղեկութիւնը, ո՛չ թէ մանկտւոյն միայն պէտք է՝ այլև չափահասից յամենայն կարգէ և յամենայն աստիճանէ։ Կարծեմ ոչ զոք կը վիրաւորեմ, եթէ ըսեմ թէ շատեր և խիստ շատեր Հայոց պատմութեան մասին վարժարանի համառօտ դասագրքէն զատ գիրք մը ձեռք չեն առած, և վարժարանը թողած օրերնէն մինչև ցայսօր անցած տարիներն մեծաւ մասամբ կորսնցնել տուած են իրենց նաև այն դոյզն տեղեկութիւնը՝ զոր համառօտ դասագիրքը իրենց

մտաց մէջ թողուցած էր ։ Ես չեմ պնդեր թէ ամենայն ազ քաջ և ներհուն պատմաբան պիտի ըլլայ , այլ թէ գոնէ իւր ազգային պատմութեան կմախքը կազմող տեղեկութիւնք իրեն ընտանի պիտի լինին ։ Ես օգտակար կը դատէի , որ այդ լսարանները որ քաղաքիս թաղերուն մէջ կը բազմանան օրըստօրէ , բանախօսական նիւթերուն մէջ ընդունէին նաև ազգային պատմութիւնը մեկնել ընդհանուր տեսութեամբ և իմաստասիրական հետախուզութեամբ ։

Մէկ խօսքով՝ ազգային աւանդութեան աւելի վառ կերպով ազգայնոց մտաց մէջ հաստատուելու համար հարկ եղող ամեն կերպ միջոցներ , թանգարաններ և գրուածներ , պատկերներ և տախտակներ , երգեր և դասագիրքներ , լսարաններ և քարոզութիւններ , առաջին պայմանին հարկէն յառաջ եկեալ միջոցներ են մեր ազգային յառաջադիմութեան և զարգացման . և ասոնց վրայ նախ և առաջ կը հրաւիրեմ Ձեր ազգասիրական մտադրութիւնը և կ'անցնիմ փութով միւս պայմանին հարկէն ծագեալ միջոցներուն ։

Բազմութիւնը երկրորդ պարագայն կամ պայմանն էր մեր բացատրածներուն մէջ . թէ և կրցանք այդ պայմանը լրացնելու հարկ եղած տեղեկութիւնները քաղել և ներկայացնել , բայց ձեր և իմ սրտերն հաւասարապէս զգացին և կ'զգան թէ ինչչափ ալ անտնօրինելի կերպով հարկ եղած բազմութիւնը կրնամք յառաջ բերել հակառակորդին դիմաց , բայց երբ մեք մեր մէջ կը խօսակցիմք , ուր կարող եմք մեր թերութիւններն իսկ համարձակ զրուցել, ո՛չ դիտմամբ յանդիմանելոյ ի ի կշտամբանս , այլ դիտմամբ յանդիման առնելոյ յուղղութիւն , յայնժամ կարող եմք անկեղծաբար

ի թիւ արկանել թէ որչափ թերութիւններ ունիմք ի բազմութեան մասին ։

Սակայն ինչպէս ազգասիրութեան համարձակութիւնը՝ զիս կ՚ստիպէ այդ պակասութիւններն երեւան հանել, նոյնպէս և ազգասիրութեան իմաստութիւնը կը պարտաւորէ ես յարել թէ ընդդէմ բազմութեան պայմանին գործուած թերութիւնք, ո՛չ թէ Հայոցս ազատակամ յանցանաց կամ կամաւոր տկարութեան հետեւանքն են, այլ գլխաւորապէս բռնագոյն հարկին, զոր մեծագոյն զօրութեան անուամբ կը նշանակեմք յաճախ մեր խօսից մէջ․ ըսել կուզեմ թէ Հայն բազմութեան դէմ կը մեղանչէ, վասն զի դժբաղդ պարագայք առ այդ զինքն կ՚ստիպեն ։ Այսու յանցանաց ծանրութիւնը թէպէտ կը թեթեւնայ, այլ չքարձուիր պակասութիւնը, և իւր փութոյն ու ջանից ալ միշտ ասպարէզ մը կը մնայ, բազմութիւնը առաւելլու և Հայ սերունդը շատցնելու ։

Երկու կէտ պիտի նկատեմք մեք յայդմ մասին․ մէկ մը Հայութիւնը շատցնել, մէկ մըն ալ Հայաստանը հայաբնակ գործել․ երկուքովն ալ մեր սերունդը կ՚աճի, և մեր ազգութիւնը կը յառաջանայ ։

Հայաստանի մէջ Հայութեան շատնալուն առաջին դարմաններէն մին է՝ պանդուխտներուն գաղթականութեան ճար մը գտնել, և ըստ կարի փութալ պանդուխտները իրենց հայրենական երկիրները դարձնել ։ Պանդխտութեանց պարագայն ոչ միայն մեր հայրենի Հայաստան երկրէն բազմաւոր անձեր կը պակսեցնէ, այլ և կը զրկէ մեր հայրենիքը անոնց բազմածին սերունդէն ։ Ո՛հ, ինչչափներ անմիջապէս ամուսնանալէ յետոյ, կամ թէ հազիւ անդրանկին առաջին ճիչը լսած,

երեսնին կը դարձնեն իրենց գիւղերուն և տուներուն և տարաշխարհիկ երթալով տասն և քսան տարիներ հեռաւոր նժդեհութեան մէջ կը մնան, և իրենց ամուսնական լծակցութիւնք ստերջութեան կը դատապարտեն։ փորձուած և քննուած և Հայաստանի մէջ խորագննին ուղեւորութիւն ընողներէ վկայուած է Հայուհեաց բազմածնութիւնը. և այն գիւղերուն մէջ ուր ընտանիք հանդարտօրէն և կարգաւոր կերպով իրենց առտնին երջանկութեան և բարօրութեան կը պարապին, քիչ տարուան մէջ Հայոց թիւք հաստատուն համարողական յառաջադիմութեամբ մը բազմացած է. և այս կէտը առաւել զգալի կերպով կը նկատուի այսօր ռուսահայոց գիւղօրէից մէջ, յորս պանդխտութիւնք դադարեալ են, և բաւական ապահով դաշտային և ընտանեկան կեանք մը հաստատուած։

Այժմ ամենայնի կը հակառակի տաճկահայոց մէջ հարստահարութեանց և թշուառութեանց և առտնին կենաց վտանգներուն առաւելութիւնը. այլ պիտի հարցնեմ ես մեր պանդուխտ եղբարց թէ իրենց գաղթելովը ապահովութիւն և հանդարտութիւն կը գտնան արդեօ՞ք իրենց ընտանիքը։ Եթէ առոյգ երիտասարդներ իրենց գիւղը կը թողուն, կը պակսեցնեն անտի երկիրը մշակելու կարեւոր եղող ձեռքը և ընտանիքը պաշտպանելու հարկաւոր եղող բազուկը. եթէ ամենայն երիտասարդք և արք զօրութեան ի միասին ապրին, և ի հարկին մերձակայ գիւղեր իրարու հետ յարաբերութիւն և օգնականութիւն հաստատելով միանան, և իրենց պաշտպանութեան հարկաւոր եղող միջոցները պատրաստեն, և արթնութեամբ իրենց անձին և իրենց ընտանեաց և իրենց արտօրէից պաշտպանու-

թեանը հսկեն, աներկբայելի է որ այն շրջաններուն մէջ հանգստութիւն ալ կը հաստատուի, ապահովութիւն ալ, բարօրութիւն ալ և բազմութեան աճում ալ։ Եւ որովհետև վարկպարագի չէ ըսածս, պէտք կը լինի յիշեցնել թէ նոյն իսկ ուղեւորաց և պանդխտից բերնէն լսած եմ, թէ Հայաստանի զանազան կողմերը զրուցածիս համեմատ պաշտպանեալ գիւղեր կան, որոց մէջ հարստահարութիւնք չեն գործուիր և թշուառութիւնք տեղի չեն ունենար. և որ իմ դիտմանս ճշդիւ կը համապատասխանէ, այն գիւղերէն պանդուխտ մը իսկ չեմք տեսնար մայրաքաղաքիս նաւամատոյցները և մաքսատուները և անկիւնները լեցնող Հայաստանցի բեռնակրաց և մշակաց դասուն մէջ։

Ո՛ւր էր թէ մեծագոյն շահու մը և օգտի մը ծառայէր այդ պիտիները յորդորէր պանդխտութեան. հարիւրէն իննսունը, չըսեմ թէ իննսուն և ինը, խեղճ և կարօտ կեանք մը կ'անցնեն խաւարչտին պանդոկներու անկիւնը կամ անհանգիստ գործատուններու մէջ. և և քանի մի հատին ցանցառ բարեբաղդութիւնը չկրնար ընդհանրութիւնը քաջալերել։ Ուր ընդհակառակն այն փոքր շահը, զոր աստ իրենց անտանելի աշխատութեան կը պարտին, և որուն մեծ մասը պանդխտութեան մէջ իրենք կ'սպառեն, առաւելոքն կրնային գտնալ իրենց ծննդական գիւղին կամ քաղաքին մէջ, մաճին և արօրին ծախելով այն ոյժը, զոր աստ համետին և ձողոյն ներքեւ կը մաշեցնեն։

Մի՛ ըսէք ինձ թէ այդ նիւթը ուրիշ տեղ պէտք է որ ես մեկնաբանեմ. իրաւ, ունկնդի՛րք իմ, Ձեր թաղը այդ պանդուխտներուն կեդրոնը չէ, այլ թէ ոմանց կ'ըսեմք որ չընեն, ուրիշներու ալ պէտք է ը-

սեմք որ աշխատին և ճգնին որ այդ արդիւնքը իրականանայ։ Լսեր էի թէ մասնաւոր անձինք միաբաններ էին պանդխտից վերադարձին զբաղելու, և ի հարկին միջոցներ ալ ճարել տալով իրենց ճանբորդութեանց ծախքերը լեցնելու։ Չեմ գիտեր ուր մնաց սոցա ազգօգուտ դիտումը և ջանքը, բայց պէտք էր որ դուք այդ կէտը ձեր ուշադրութեան և ձեր խնամոց առարկայ ընէիք։

Մեր ազգային բազմութեան նկատմամբ պէտք է ևս այժմէն սկսանիլ հայաբնակ գաւառաց մէջ կեդրոնանալ, և այն տեղերէն՝ ուր Հայութիւնք սփռուած է, կամաց կամաց ի կեդրոն դիմելու բաղձանքը զարթուցանել, և գործադրութիւնք փութացնելու միջոցները հոգալ։ Այդ նիւթը ուրիշ բանախօսութեան մէջ քիչ մը մեկնած ըլլալուս, կը փութամ ուրիշ կէտեր բացատրել։

Մեր ազգային ամուրեաց ալ երկու խօսք կ'ուղէի ըսել, թէ աճման օրհնութիւնք զոր եա ի նոսա Աստուած, անպտուղ կը մնայ իրենց վրայ, և ազգին օգտակար և պիտանի անհատներ կը պակսին իրենց այդ մասին զանցառութեամբք։ Բազմութիւնն Հայոց շատ զանազանութիւն կ'զգայր եթէ դժբաղդաբար ամուրի կենաց նորաձեւութիւնք մայրաքաղաքս չճարակէր, և մայրաքաղաքէս ելլալով գաւառներն ալ տարածուելու չսկսէր։ Փափուկ նիւթ մըն է, զոր կամ ըստ օրինի բացատրելու է՝ որ սխալ իմաստներ չպրդին, և կամ բացատրելու սկսելու չէ։ Ես այդ վերջինը կ'ընտրեմ. որովհետև առաջինին մտնելու ժամն ինձ կը պակսի։ Հոս կը յիշեցնեմ միայն, թերևս ուրիշ տեղ լիագոյն մեկնաբանութեան մտնելու առիթ կ'ունենամ։

Մեր ազգութեան գոյութեան պարագայից մէջ

բազմութեան ետեւէն լեզուն յիշեցինք · և այս կէտն ալ քանի մը լեզուներու տարազներ կը ներկայէ մեզ , և քանի մը բարեփոխուելու և ուղղուելու կէտեր , թէպէտ ի մասինս ընարելագոյն վիճակի մէջ գտնուելու մխիթարութիւնը կարծեմք ունենալ ։

Եթէ լեզունիս կայ , և եթէ լեզունիս է որ մեր և ամեն ազգաց անհատները իրարու կը կապէ , պէտք է և առաջին պէտք՝ որ ամեն անհատ այդ լեզուն գիտնայ և այդ լեզուով իւր միտքը բացատրէ ։ Ուրիշ աշխարհաց մէջ անհաւատալի և հակասական խօսք մը կը կարծուի եթէ ոք զրուցէ՝ թէ այս կամ միւս ազգէն անհատ մը իւր ազգին լեզուն չգիտեր ։ կը հարցնէ քեզ լսողը · Ուրեմն դա համազգի հօր և մօր զաւակ չէ՞ արդեօք ։ Որ այսպէս կը խօսի՝ պէտք է այնպիսի ազգէ եղած ըլլայ՝ որ իւր հայրենական երկրին մէջ խառնուրդ տեսած չըլլայ , և ուր համաձեւ ազգ և պետութիւն իրարու նեցուկ և զօրավիգ կը լինին ։

Հայաստանի բազմադարեան գերութեան՝ և խառն և զանազան և բաժանեալ տիրապետութեանց օրինակը , Եւրոպիոյ մէջ օրինակ չունի , և մեք միշտ պէտք է մեր բաղդը ուաղեմք , ինչպէս նաև մեք մեզէն պէտք է որ մեր այս տարօրինակ ձախողութեան դարմանը հոգամք ։ Հայերէն լեզուն , ստոյգը խօսելով , Հայաստանի մէջ անգիտացեալ չէ , այլ Հայաստանէ գաղթելոց մէջ · և այս այնչափ առաւել՝ որչափ Հայաստան աշխարհէ հեռացած են , և այն ալ մասամբ ժամանակաց արկածներուն և մասամբ բռնական իշխանութեանց գործը եղաւ ։ Օրհնեա՜լ է Աստուած , որ այդ դժբաղդութիւնը բազմօք թեթեւցաւ , և քիչեր մնացին որ Հայերէն չխօսին · երիտասարդութիւնը արդէն զգայ այդ

պէտքը, և մանկութիւնք ինոյն կը վարժի ջանիւք ազգասիրաց: Դաստիարակութեան զարգացման համար հաստատեալ ընկերութիւնք այդ հոգը ստանձնեցին, որ ամեն Հայ՝ Հայերէն խօսի և ուղիղ խօսի, Հայերէն գրէ և անսխալ գրէ, և ինչ որ լեզուէն օգուտ կ'ըսպասուի՝ անթերի լցուի:

Լեզուի պայմանին մասերէն մին ալ անոր ներքին զարգացումը և յառաջադիմութիւնն է, երբ գործի հրահանգելոյ և ի բարձրագոյն ուսմունս առաջնորդելոյ: փորձառութեամբ հաստատուած բան է թէ ցորչափ ժողովուրդ մը կրթեալ և հմուտ և վարժեալ ըլլալու համար նախ նոր լեզու մը ի հիմանց ուսանելու է, որ ետքը անով յուսմունս՝ ի մակածութիւնս և ի գիտութիւնս ուղեւորի, այն ժողովուրդը հմուտ ուսումնական չըլլար, վասն զի մեծագոյն մասը չհասնիր այնչափ տարի ուսմամբ զբաղիլ՝ որչափ հարկաւոր է թէ՛ լեզուն ուսանելու և թէ՛ անով ուսումնական ըլլալու: Ցորչափ Եւրոպէ Լատիներէնով կ'աւանդէր կարեւոր ուսմունքը, սակաւք էին ուսումնականք, և այսմ հանգիտակչիռ կրնայ սեպուիլ ինչ որ մեր մէջ ալ կը ճշմարտուէր, երբ գրաբարով պէտք էր ուսանիլ ամենայն ինչ: Իսկ ընդհակառակն եթէ մայրենի լեզուն, քիչ մը յղկուելէն և կատարելագործուելէն ետքը, որ դիւրաւ առաջին պատանեկութեան տարիներու մէջ ալ կը կատարուի, բաւական կը լինի ուսմանց և հմտութեանց. բոլոր իսկ ազգը կրնայ ուսումնական ըլլալ. և այս ալ փորձով և արդեամբ սկսաւ մեր մէջ ալ ճշմարտիլ:

Այժմիկ ուրիշ մէկ կէտ մը կայ զոր պէտք է մեզ խնամով մշակել. նայիլ որ այն աշխարհաբար լեզուն որ այդչափ հարկաւոր է, ստոյգ և միաբան ձեւ մը ըն-

դունի, և ամենուրեք, թէ ոչ նոյն հնչմամբ արտասանեալ և նոյն ոճով խօսեալ, գոնէ նոյն կերպով գրեալ և գործածեալ ըլլայ, որ բոլոր Հայութիւնք հաւասարութիւն և միաւորութիւն ստանայ, և նոյն գործին իրարու հետ հաղորդակցութեանց և յարաբերութեանց ծառայէ, և մէկ կողմը արտադրուած երկասիրութիւնք միւս կողմանց ալ օգտէ և բոլոր Հայ սերընդեան շահաւոր ըլլայ։ Հոս չեմ յանձնարարեր ո՛չ այս ոճը, և ո՛չ միւս ոճը, ո՛չ գրաբարը կը դատապարտեմ և ո՛չ աշխարհաբարը. թերևս, ասոնց երկուքէն իմաստուն բարեխառնութեամբ գործածական եղած լեզունիս կարգադրելու դրութիւնն իսկ վերաղ ասելի սեպուի ըստ ոմանց։ Գործնական միջոցը հայախօսական կաճառմըն է, թէ ոչ իւր ամենայն փառօք հաստատեալ ի բարձր իշխանութենէն, գոնեա Հայ լեզուին հետամուտ և հմուտ անձանց համամտութեամբ կազմեալ, որ և հրապարակական բանախօսութեամբք և վիճաբանութեամբք կարող է, գոնեա քանի մի գլխաւոր կէտերը նախ հարթել և յարդարել, և ատենին նաև մանրամասն խնդրոց լուծմամբք զբաղիլ։

Լեզուի կը վերաբերի ըստ իմիք և բովանդակ իսկ ազգային դաստիարակութեան բազմաճիւղեան և բազմակնճիռն խնդիրը. սակայն ինչպէս ուրիշ տեղ ալ զրուցեցի, այն մասերը որք մասնաւոր նիւթեր կը կազմեն, և որոց վրայ առանձինն խօսեցայ, կամ առանձինն խօսիլ հնար է, զայնս առ այժմ ի բաց կը թողում, ինչպէս նաև դաստիարակութեան խնդիրը, և կը փութամ՝ յաւէտ կեդրոնի կամ աշխարհի պայմանին։

Մեր աշխարհին նկատմամբ ինչ որ բնակութեան կը վերաբերի, մասամբ վերը խօսեցայ բազմութեան վրայ

խօսելով. հոս կ՚ուզեմ միայն պնդել թէ մեր աշխարհին մէջ առաւել պէտք է բնակութիւնք շատցնել և բազմահայութեամբ զայն բազմամարդացնել․ վասն զի Հայաստան աշխարհ՝ Հայութեան աշխարհ, և Հայ ազգութեան կեդրոն ըլլալու համար, թէ որ հարկ չէ որ բացառաբար Հայերէ բնակեալ ըլլայ, անտնօրինելի է գոնեա որ գլխաւորաբար Հայ բնակիչ ունենայ, և անհակառաբար հայաբնակ աշխարհ ճանչցուի։

Կայ և ուրիշ պայման մըն ալ․ և այս է՝ որ Հայաստանը Հայու հող ըլլայ, Հայաստանեայց հողոյն տէրը Հայ ըլլայ։ Ահա լայնարձակ խնդիր մը որուն վրայ տարիներ առաջ մեր կեդրոնական իշխանութեան Գըլուխն ու պաշտպանը իւր մտադիւրութիւնք դարձոյց և գաւառական Առաջնորդաց ալ յանձնեց որ ժողովրդեան մտադիւրութիւնք հրաւիրեն․ և այս վերջին ժամանակներուս մէջ ալ ի նոյն կը խորհին մեր ազգասէր քաղաքագէտները, և զայդ կը յանձնարարեն մեր խմբագրապետները իրենց լրագրաց միջոցաւ։ Ի զուր կը ճգնիմ ես ձեր մտադիւրութիւնք հրաւիրել, որ քան զիս առաւել համոզեալ էք թերևս․ դուք որ աշխարհի և գործոց մէջ կ՚ապրիք, դուք որ աշխարհի ընթացից մէջ գիտէք թէ ինչ նիւթական և իրական արդիւնքներ կը ծնանին հողատէր ըլլալէ։ Ես կարող եմ շատ մը իմաստասիրական պատճառաբանութիւններով և բարոյական առածներով և ճշմարտութիւններով ձեր միտքը լուսաւորել և ես, այլ թէ իմ մեկնութիւններս ալ ձեր արդէն ունեցած համոզողութեան հետ խառնուելով միտքերու և սիրտերու պարունակէն դուրս չպիտի ելլան, անօգուտ կը մնան երկուքն ալ․

Կա՞յ եղանակ մը արդեօք Հայաստանի շինականը

համոզելու, որ իւր հողը ձեռքէ չհանէ, և իւր փոքրիկ դրամագլուխն ալ արտ մը՝ ագարակ մը գնելու ծախէ։ Թերևս Առաջնորդայ քարոզութիւնը պիտի յիշէք, թերևս Պատրիարքական կոնդակներ պիտի յառաջ բերէք, թերևս յորդորական գրքոյկներ պիտի առաջարկէք, բայց ես պիտի ըսեմ թէ ասոնց ամենն ալ քիչ կամ ոչինչ օգուտ կրնան պտղաբերել։ Ո՞չ ապաքէն ասոնց ամենը մեծաւ մասամբ մեր եկեղեցական դասուն արդիւնքը պիտի ըլլան. ուրեմն ամենայն ոք պիտի կարենայ, և կ'ընդունիմ ես՝ թէ իրաւամբ պիտի կարենայ դիմադրել, թէ չահուց և առևտրոյ գործողութեանց մէջ մեր խօսքը մեծ արժէք մը չկրնար ունենալ։ Այս պատճառաւ ես ալ հոս տեղս այս կէտին վրայ իմաստասիրելէ հրաժարեցայ։

Մէկ եղանակ մի միայն կայ, եղբա՛րք իմ, և ի մանաւորի կը խօսիմ առ ձեզ, Մեծապատիւ Տեա՛րք, որոց բաղդը և բաղդին նուիրողն Աստուած հաճեցաւ արտաքին միջոցաց առատութիւն շնորհել, և այդ եղանակն ալ ձեր օրինակն է։ Երբ տեսնայ մեր Հայաստանի շինականը թէ Կոստանդնուպոլսոյ, Զմիւռնիոյ, Եգիպտոսի, Ռումանիոյ, կամ ուրիշ որ և իցէ քաղաքի կամ երկրի՝ այս անուն կամ այն անուն մեծատուն անձը իր գիւղին կամ գաւառին մէջ ընդարձակ երկրի մը տէր կ'սկսի ըլլալ, երբոր այդ օրինակը կրկնուելով և յաճախելով, ծայրէ ի ծայր, գաւառէ ի գաւառ ձայն տայ Հայաստանցին իւր հայրենակցին թէ օտարացեալ կարծուած Հայաստանի գաղթական զաւակունք, վերստին իրենց հայրենական երկրին ժառանգութեան կը դիմեն, այն օր իրաւցնէ այնպիսի բարոյական ոյժ մը գոյացուցած կ'ըլլաք, եղբա՛րք, զոր մեր դասը իւր

հարիւրաւոր կոնդակներով, և հազարաւոր բանախօսութիւններով, և բիւրաւոր քարոզներով չկրնար երբէք գոյացնել։

Ստէպ ձեզի կու գամք և ի սէր հայրենեաց և ազգի զոհողութիւններ և նուէրներ և ողորմութիւններ կը խնդրեմք. և դուք ալ ձեր ազգասիրութենէն մղուելով՝ մեր հայցուածը անտես չէք ըներ։ Այդ պարագային մէջ չեմ կարծեր թէ բոլորովին զոհողութեան գործ մը ձեզ կ'առաջարկեմ։ Ձեր ստացեալ հողը ի Հայաստան կրնայ ձեզ պտուղ մըն ալ արդիւնաւորել, առժամանակեայ կերպիւ միջակողաց յանձնուելով շահաւոր պայմաններով։ Ապագային՝ և մօտաւոր ապագային՝ մեծ յարգ պիտի աւելցնէ այդ երկիրներուն, և ինչպէս այսօր արդէն դադրեցաւ՝ մի կամ կէս դահեկանի անարգ գինը առ իւրաքանչիւր արտավար, որով երէկ Հայաստանի երկիրները կը վաճառուէին, վաղը այս աւուր գինն ալ պիտի դադարի, և ձեր փոքրիկ դրամագլխով ստացեալ հողը մեծագումար արժողութիւն մը պիտի ստանայ. Ճարտարութիւնը ստուգիւ տեղը և դիրքը ընտրելու վրայ է. այլ կարծեմ թէ այս մասին ես ձեզի չեմ կրնար ուսուցանել։

Մեր նախնի հարք և ճշմարտութեանց աւանդապահք գեղեցիկ իմաստ մը յատկացուցին մարգարէական պատգամին, «Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն». և ի մէջ եկեղեցեաց, որք են նորոյս կտակի Սիոններ, իրենց արդեանց և գոյից զաւակները ունենալու համար առաջին պարտք մը սեպեցին անձանց, որ իւրաքանչիւր ոք յիշատակ մը թողու սրբոյ տաճարաց և վանորէից, որ մարգարէական երանութեանն արժանանայ։ Նոյն պատգամն կ'ուզեմ ես այժմ մեր վիճակին յարմարցը-

նել. որովհետև Իսրայէլի Սիոնը իւր հայրենեաց կեդ-րոնն էր ։ Զաւակ մը առաւել հաստատուն ինչ է քան թէ սպասու մը կամ մատենի մը շարժական նուէրք . զաւակ եղեալ յաշխարհի ապագայ սերնդեան նախահայրն է . և դուք ձեր հոգատարութեամբ նոր սերընդեան մը նոր կեանք պիտի պարգևէք ։ Յիշեցէ՛ք և դուք մարգարէական պատգամը , « Երանի՜ որ ունիցի զաւակ ի Սիոն » , զոր հայացնելով մը կ՚երկրորդեմ ես . « Երանի՜ որ ունիցի երկիր ի Հայաստան » ։

Սահելով մը կ՚անցնիմ , Տեա՛րք իմ և Տիրուհի՛ք , ծանր և կարևոր խնդրոց վրայէն , որովհետև ինչպէս կը տեսնայք , միտքս չէ մասնաւոր նիւթ մը ձեր ունկնդրութեան առաջարկել , այլ ընդհանուր տեսակէտով մեր ազգութիւնը ամբողջաբար գրաւել , և համառօտակի յայտնել թէ ինչպէս նա կայ , և թէ ինչպէս պիտի յառաջանայ՝ մի և նոյն պայմանաց գոյութեամբը և զարգացմամբը ։

Վասն որոյ չեմ քաշուիր ըսել թէ նաև մեր ազգային կազմակերպութիւնը պէտս ունի վերանորոգմանց , և ներքին կանոնագրութիւնները բարեփոխմանց հարկը կ՚զգան ։ Քանի կ՚ընդարձակի գործունէութեան ասպարէզը , քանի կը բարձրանայ դիտակէտին նշանը , քանի կը զարգանայ ազգային կարողութեանց սահմանը , հարկ կը ծնանի որ կազմակերպութեան տարերք բաղկացուցիչք և միաւորիչք հաւասարաչափ յառաջադիմութեամբ բարգաւաճին և կատարելագործին ։

Տարիներէ ի վեր ազգին մէջ սահմանադրութեան վերաքննութեան պէտք մը զգացուեցաւ , ոչ զի սահմանադրութիւնը ի սկզբանէ իւր առաջին հեղինակաց ձեռքէն թերի և անկատար արտադրուեցաւ , այլ վասն

զի ժամանակը առնելով և պարագայք փոփոխելով, մեր սահմանադրութեան մէջ ալ հաստատութիւնը պահելու հարկաւոր շարժումները պէտք է կատարուին։ Սահմանադրութիւնք երկու էական տարբեր մասերու կը բաժնուին ամեն տեղ . մին անփոփոխ է , վասն զի հիմնական է . միւսն փոփոխական է , վասն զի ժամանակին պէտքը պիտի լցուցանէ ։ Առաջինին վերաբերեալ կէտերուն նկատմամբ չեմ կարող և ոչ բան մը ըսել ։ վերջիններուն նկատմամբ է որ կազմակերպութեան կատարելագործուելու պէտքը կը հաստատեմ։

Այլ թէ ինչպէս , ո՛չ ես հոս կրնամ յայտարարել, և ո՛չ իսկ եթէ յայտարարեմ, օգուտ մը քաղել հնար է, մինչ այս կէտը ուղղակի և միայն՝ ընդհանուր և փարչական ժողովոց իշխանութեան ենթարկեալ և հանճարոյն հաւատացեալ է ։ Հարկը կը պահանջէ որ մեր կեդրոնական և գաւառական կազմութիւնները առաւել պարզութեամբ մը և առաւել զօրութեամբ մը զգենուն այն կերպարանները՝ որք մեր ազգութեան շահուց պաշտպանութեան և մեր ազգութեան կարօտութեան լըրման կը համապատասխանեն ։

Այդ այդպէս համառօտակի նշանակելէս ետքը, բոլորովին իսկ զանց պիտի ընեմ խօսիլ այն պարագայից վրայ՝ որք կը վերաբերին միւս այն պայմանին, զոր առաջին մասին մէջ մեկնաբանեցի , յօդակապութեան և միաւորութեան պայմանին, որ մեզի պիտի առաջնորդէ Հայութեան իրական միութեան . այն միութեան որ իմ և ձեր և ամենայն Հայազգեաց ըղձից նպատակն է , և որոյ նկատմամբ զգածմունքներս յայտնած և բաղձանքներս հրապարակաւ իմացուցած եմ։

Աւանդութիւն , բազմութիւն , լեզու , կեդրոն ,

կազմակերպութիւն և յօդակապութիւն գոյացեալ և արդեամբ իրականացեալ՝ մեր Հայութիւնը ազգութիւն մը կը կայուցանեն ։ Աւանդութիւն, բազմութիւն, լեզու, կեդրոն, կազմակերպութիւն և յօդակապութիւն զարգացեալք և կատարելագործեալք՝ մեր ազգութիւնը պիտի յառաջացնեն և բարգաւաճեն ։ Այլ մինչև ո՞ւր պիտի կարենամք մեք ձկտիլ մեր բղձիւք · մինչև ո՞ւր դիտել մեր ազգասիրական ճարտարամտութեամբ · մինչև ո՞ւր դիմել մեր ազգօգուտ աշխատասիրութեամբ ։

Կ՚ուզէի, եղբա՛րք իմ, կ՚ուզէի անկեղծաբար խօսիլ, և ինչ որ ես յինքն կ՚զգամ, անպատրուակ յայտնաբանել, և առակ և ոչ մի գործածել իմ պատասխանիս մէջ ։ Բայց ինչ ընեմ, որ կեղակարծ ապագային վրայ ոչ ոք կարող է ստուգապատում հաստատութեամբ կարծիք յայտնել ։ Եթէ Հայութիւնը ազգութիւն է, ապա Հայութիւնը կրնայ ձկտիլ, դիտել և դիմել, մինչև ուր որ ազգութիւն մը կրնայ հասնիլ ։ Ես չեմ՝ որ ազգասէր մտաց և ազգատենչ բղձից սաւառնեալ թռիչները կասեցնեմ · ես չեմ՝ որ խոհականագունից քան զիս մտածած և առաջարկած յառաջադիմական խորհրդոց և կարծեաց հակառակիմ · Ո՛չ · խոհեմութիւնը և իմաստութիւնը թո՛ղ ըլլան ձեր մտաց թեւերուն բարձրացուցիչները, և աներկեւան բարձրացէ՛ք դժուարին թռիչներուն բարձունքը ։

Հայքս Պատրիարքական և ազգապետական իշխանութեանց վայելմամբ, կրցանք պահպանել մեր ազգութիւնը, և զգալ թէ առաւելին ալ պէտք է ըլլայ մեր նպատակը ։ Հայքս ազգութեան առաջին աստիճանին մէջ երկարժամանակեայ փորձառութեամբ հաս-

տուեալ սահմանադրական վարչութեան բարիքը զգացինք, և զայն առաջին մեք փոխադրեցինք յարեւելս, և նորա հովանւոյն ներքեւ յառաջացանք և ես ։ Հայքս յառաջադիմութեան կաթամբ սնուցեալք՝ առաւել հաստատուն կերակրոյ պէտքը զգալով խնդրեցինք օրինաւորապէս՝ որ Հայկական գաւառաց կառավարութիւնք բնիկ Հայ տարրի յանձնուի, և մեր խնդիրը պնդելու վրայ եմք, և յաջողելու յոյսն ալ օր քան զօր թէ պիտի. կը շատնայ․ և ես դոգ ստուգութիւնը կարծեմ ունենալ յաջողմանք արդեամբ և ոչ յետ բազմաց ։

Ազգասէր և ազգանուէր մեր հայրն Ներսէս, Երկրորդ Շնորհալին, ինչպէս կ'անուանէ զնա պատկառելի և ծերունազարդ Պատկանեան Հայրը, իւր անունը անմահացուց այն ծրագրին սկզբնաւորութեամբ ․ նոյն ինքն անշուշտ պսակեալ պիտի տեսնայ իւր անխոնջ աշխատանաց շարքը և մեք ի նոյն հրճուալից պիտի վայելեմք ։ Բայց և ոչ հոն պիտի մնամք Հայքս, և զայդ բնական օրինաց իսկ հարկը կը բռնադատէ զիս խոստովանիլ ․ յաշխարհի կայուն և միայուն բան չկայ, կամ կը յառաջէ՝ կամ կ'ընկրկի երբեմն կը պզտիկնայ, և երբեմն կը քիչնայ ։ Մեր ձկտման, դիտման և դիմման ալ օրէնքը նոյն է ․ ընկրկելու, պզտիկնալու և քիչնալու երկիւղը իմ միտքէս փարատած է, մարդկօրէն խօսելով․ և փարատած է, վասն զի անցելոյն փորձառութիւնը, արդի բորբոքը և օգտակարութեան հարկը բոլորովին այլազան հակում մը սեպհականեցուցած են Հայութեան, որ ուղղակի կը տանի ի յառաջել, մեծնալ և շատնալ ։

Այս օրուընէ բոլոր ապագայն քաղել, թերեւս եղջերուաքաղ կրնայ սեպուիլ, և կը լռեմ ։ Բայց թէ Հայքս

որ եմք՝ կը պահեմք այն զգածումը զոր ունիմք, եթէ Հայք որ լինելու վրայ են՝ կը վառուին այն զգածմամբ զոր մեք ի նոսա կը տպաւորեմք, եթէ Հայք որ լինելոց են՝ նախընթաց սերունդները գերազանցելու հոգւով պիտի արծարծին, ո՞վ կ'արգելու զմեզ նախատեսական դուշակութեամբ նկատել Հայուն փառաւոր և փառալից ապագայն, և նոյնը մեզի նպատակ և դիտակէտ. նկատելով ըստ այնմ գործել այժմէն, որ անուն փառաց թողումք յետնոց, և յիշատակ օրհնութեան ընդունիմք ի նոցանէ։

Թերևս ձեզմէ դիտողներ եղած ըլլան թէ բաւական երկարօրէն և մանրամասնաբար Հայութեան կամ Հայ ազգութեան վրայ խօսելէն ետքը, դեռ և ոչ իսկ ակնարկ մը նետեցի Հայուն կրօնքին վրայ. վասն զի ամենայն ոք, և իրաւամբ իսկ, որ Հայութեան վրայ խօսիլ կը ձեռնարկէ, չկրնար Հայուն կրօնքին վրայ լռել։ Դուք չէք կրնար կարծել, ունկնդիրք իմ, որ ես այդ սկզբան համամիտ եղած չըլլամ, վասն զի իմ սկզբունքս բանիւ քարոզեցի և փորձով ալ ցուցուցի։ Եթէ լռեցի՝ այն իսկ է պատճառը, որ իմ կարծիքս ամենուն յայտնի եղած ըլլալով՝ հարկ չէի զգար իսկոյն կանխել, և իբր կարևոր կէտ մը ամենուն սրտին մէջ տպաւորելու կամ յիշողութեան բերելու աշխատիլ։

Ազգութեան պայմանաց մէջ կրօնք չմուծի, ոչ թէ զայն արտաքսելու համար, որ քա՛ւ լիցի. այլ որովհետև կրօնքը ըստ իմաստասիրաց և քաղաքագիտաց՝ պայման մի է բովանդակ իսկ մարդկային ընկերութեան՝ որոյ ազգութիւնք մասունք են, կամ թէ ծնունդք են, անդստին նորին բնութենէ ծագում առած։ Ցարդ մարդկային ընկերութիւն առանց կրօնից չեղեւ, և յետ

տարօրինակ լինել կրնալուն փաստեր կը պակսին ։ Որք հեռաւոր ապագայ դարուց մարգարէք՝ կ՚ուզեն պընդել թէ մարդկային ընկերութիւնք և ազգութիւնք առանց կրօնից պիտի լինին և զարգանան, այնպիսի ժամանակի և անձանց համար կը խօսին՝ որոց վրայ տեղեկութիւններ կը պակսին մեզ ․ և կարծեմ թէ ես և անոնց վրայ իմաստասիրելու կարողութիւնք և յարմարութիւնք ։ Արդեան և անցեալ աշխարհի գրութեան և սկզբան համեմատ՝ կրօնքը, ոչ թէ պայման է միայն, այլ առաւել ևս քան զպայման է ընկերութեանց և ազգութեանց ․ անոնց դայեակն է և խնամակալը և մշտատեւ յանձանձիչը ։ Իսկ մեր ազգին վրայ խօսելով ի մասնաւորի, և մեր կրօնից վրայ առանձնակի, առաջ երկուքին այնպէս իրարու միացեալ ապրեցան յանցելում, և այնպէս իրարու զուգակցեալ կը մնան յայժմուս, որ մեր կրօնից վնաս ինչ բերել, ուղղակի մեր ազգութեան վնաս բերել է ․ և ինչ որ ի մեզ կրօնական էր ըստ ինքեան, ազգային եղեւ և է իրականապէս ։

Այլ ես այս կէտը իմ բանախօսութեանս սկիզբը զետեղել չուզեցի, որպէս զի մեր ազգութեան նկատմամբ ինչ որ նաև կրօնքէն անխտրաբար ըսելիք կար, պայծառաբար ձեր մտաց առջեւ նկարէի, և կրօնական պարագայից գաղափարը ձեր մտաց տեսութիւններէն չցրուէր ։ Ինչ որ ըսի և պատմեցի, խորհրդածեցի և պատճառաբանեցի, եթէ ըստ ինքեան իսկ մեծ ազդեցութիւն ունի, ո՛րչափ ևս առաւել երբ այդպիսի զօրաւոր և նպաստաւոր պարագայ և պայման մըն ալ անոնց վրայ աւելնայ ։

Մեր ազգութեան գոյութիւնը ստոյգ է ուրեմն և իրական, մեր ազգութեան յառաջադիմութիւնը հար-

կաւոր և պահանջական. իսկ հարկին և պահանջից ծանրութիւնք ուղղակի և անմիջապէս մեր վրայ գրուած է ։ մեր կ՚ըսեմ, ո՛չ միայն բովանդակ Հայ ազգը իմանալով ընդհանրաբար, այլ մայրաքաղաքիս բնակիչները իմանալով առանձնակի, որոց ընտրելագոյն դիրքը և զօրաւորագոյն միջոցները և ազդողագոյն կարողութիւնք իրենց վրայ մասնաւոր պարտք մը կը յաւելուն, և մանաւանդ անոնց, որք դրից, միջոցաց և իրողութեանց մասին առաւելութիւններ կը վայելեն, և այդպիսիներէն ոչ [illegible] թաղին բնակչաց և իմ Մեծարգոյ ունկնդրացս մէջ նկատել ։

Երբ պայմանները կը թուէի և իւրաքանչիւրին զարգացման կէտերը ի համառ կ՚առնուի, այնչափ զանազան և տարբեր կատարուելիք գործեր յիշեցի, որ թերևս ձեր միտքն ալ շփոթութեամբ լեցուցի, ու փոխանակ ձեր ազգասիրութեան աշխոյժը աւելցնելու, անոր լքման պատճառ եղայ, կատարուելիք գործոց անտանելի շատութեամբը և բարդութեամբը ։ Եթէ կարող և յազգասիրական զգածմունս քաջահաստատ ունկնդրութիւն մը ունենալուս վստահ չըլլայի, թերևս ես յինքն ըրածիս վրայ այլայլէի կամ զղջայի․ այլ այժմ ո՛չ այդպէս. եթէ և ընելիքը շատ ըլլայ, ձեր իմաստութիւնը բաւական է անոնց հակակշիռ դարմանը մտածել ։

Ինչ որ հիմա զանազան գործառնութիւնք յիշուեցան, միայն առարկայից տարբերութեամբ զանազանեալ գործեր են, որք իրենց մէջ բնութեամբ և էութեամբ չեն զանազանիր, ինչպէս երբ քու գոյքեդ նպատակ մը կ՚առաջաձեռնես, գործդ զանազան անուն-

ներ կ'ստանան, ըստ որում առատաձեռնութիւնդ ի-րեն առարկայ ունի աղքատը կամ որբը, հիւանդը կամ խեղճը, անուսը կամ անկարը, ազգը կամ եկեղեցին, կղերականը կամ ուսումնականը, բայց իրօք և արդեամբ և գործողին նիւթական գործոյն նկատմամբ՝ մի և նոյն առատաձեռնութիւնն է. որ խորհրդով՝ բանիւ կամ գործով արտայայտուելով, և մի կամ միւս կամ տար-բեր առարկայի վրայ արդիւնաւորուելով՝ զանազան ա-նուններ կ'ստանայ, և զանազան գործերու շարքեր կը կազմէ։

Ես երեք բան կը նկատեմ այդ ընդարձակ ազգա-սիրական ասպարիզին մէջ. անձը՝ որ պիտի գործէ, մի-ջոցը կամ աւելի նիւթապէս խօսելու համար, դրամը՝ որով պիտի գործուի, և ատենը՝ յորում պիտի գոր-ծուի։ Երեքն ալ հաւասարապէս ձեր նկատողութեան կը յանձնարարեմ, Ազգասէր Հայորդե՛րք, որք և երի-տասարդք, որ զիս կը լսէք և որ չէք լսեր. նաև ձեր դիտողութեան կը յանձնարարեմ, Ազգասէր Հայու-հի՛ք, տիկնայք և օրիորդք, որք հաւասարապէս Հայ-ութեան անդամներ էք, և գործօն և արդիւնաւոր ան-դամներ ըլլալ պարտաւոր էք։ Ձեր ամենուն նկատո-ղութեան կը յանձնարարեմ, վասն զի երեքն ալ հոգոց և խնամոց կարօտ են։

Անձինք և մանաւանդ գործող և պիտանի անձինք բազմաւոր չեն, և ազգին պիտոյից չեն բաւեր. կան և այնպիսիներ, որք կարող ըլլալով՝ չեմ գիտեր ինչ քաղաքականութեամբ և գիտմամբ՝ գործունէութեան ասպարէզէն հեռու կ'ապրին։

Դրամ, շատ չէ, իսկ դարմանութիւնք իրաց և կա-տարութիւնք գործոց նկատմամբ դրամը կը պակսի իսկ.

և այս վասն զի ոչ յամենայն գաւառ հնար կ՚ըլլայ տա-
նուլ, որչափ ինչ իւր կարողութիւնը կը բաւէ տալ ի
նպաստ ազգին։

Ատենը նեղ է և հակիրճ. չեմ գիտեր թէ մեր ան-
ցեալը մեղադրեմ յորդ ցուցեալ դանդաղութեան
նկատմամբ, կամ թէ գիտոց յանկարծական խանդերուն
մեզ դնեմ, որ պատեհութիւններ հեռացնեն կը յա-
ճախեն, և մեր ազգային կայութեան՝ փոփոխմանց և
յառաջանալու տարրականները կարծես թէ դարուս
սեպհական շոգւոյ և ելեքտրականութեան արագու-
թեամբ կը վազեն, իսկ մեք ոչ նոյնպէս. որով և ինք-
զինքնիս փառանցի մէջ կը դնեմք՝ որ բարեբաղդ ժամը
հասնի և մեք անպատրաստ գտնուիմք։

Անձերը շատցնել, դրամը առատացնել, և ատենը
բազմապատկել. ահա՛ մեր ընելիքը, եղբա՛րք, ահա՛
Հայ ազգութեան ներկային գաղտնիքը և ապագային
խորհուրդը։ Եթէ այս երեք կէտերէն սկսելով ուզէի
բոլոր կարեւոր մեկնութիւնները տալ, հարկ էր որ ե-
րեք բանախօսութիւն ևս ընէի հոս՝ ոչ քան զներկայս
համառօտ, և այս աւուրս գործը չէ։ Բայց եթէ ես
չեմ կրնար ձեզի առնելեաց կանոնը լիովին աւանդել,
և մանրամասնաբար տեղեկութեամբ ձեր միտքերը լու-
սաւորել, գոնէ այսչափ խօսակցութենէ ետքը կրնամ
ձեզի այդ գործնական կէտերը առաջի առնել. որոց
վրայ կը հրաւիրեմ ձեր իմաստուն խոհականութիւնը,
ազգասէր եռանդը, և հանճարեղ ճարտարամտութիւնը։
Եթէ ամենեցունցդ ամենայնի զբաղիլ հնար չէ, գոնէ
լուելեայն խորհրդակցութեամբ բաժանումն մը կրնայք
հաստատել. և իւրաքանչիւր անհատ թէ՛ զուրցած ե-
րեք հիմնական կէտերէն մին գիտելով, և թէ՛ նախ-

ընթացաբար թուարկեալ պայմանաց միոյն գործադ-
րութեան հետեւելով, կարող է իր ազգասիրական
պարտքը կատարել, կամ թէ ճշդագոյն եւս խօսիմ,
կարող է իր ազգասիրական ըղձից յագուրդ տալ։

Ուր պարտք և իրաւունք իրարու կը համապա-
տասխանեն, հոն, Տէ՛ր իմ և Տիրուհի՛ք, հոն յա-
ռաջդիմութիւն լիազօր կը թագաւորէ։ Շատ թերութիւն-
ներ ունիմք. շատ պակասութիւններ՝ լեցնելու, շատ
սխալներ՝ ուղղելու. չկասիմք զայդ խոստովանիլ. վասն
զի ինչ որ ցարդ գործուած է՝ մեզ յանցանք չէ. այժմ
որ մեր կացութիւնը և մեր նպատակը աւելի պարզ և
յստակ կերպով կ՚ըմբռնեմք, այժմ որ ժամանակիս և
պարագայից յարմար Աստուածապարգեւ Գլուխ մը ա-
մենքնիս միասին և իւրաքանչիւրնիս առանձինն ի գործ
կը յորդորէ, այժմ մեր վրայ պարտաւորութիւնք կըր-
կին կը ծանրանան. եթէ այսուհետեւ մեր պարտքը չը
կատարեմք, այն ատեն է որ մեր վրայ յանցանք կը
բարդին և պատասխանատուութիւն կը բեռնաւորի։
Բայց, կենդանի՛ է Աստուած, որ ապագայ տարիներ,
և ապագայ դարեր, և մեք իսկ մեր կենաց յաջորդ-
մասին մէջ՝ մեզի դէմ ամբաստանող չպիտի յառնեմք.
վասն զի մեր իղձը, մեր սէրը առ ազգն՝ մեզի պիտի
առաջնորդեն ի բարին և ի կատարեալն. և թէ ոչ մեք,
գոնէ սերունդք մեր և ազգ մեր՝ մերձակայ ապագայի
մը մէջ, պիտի ցուցնեն ի տես աշխարհի և պիտի ըսեն
խնդալից համարձակութեամբ. Տեսէ՛ք, տեսէ՛ք Հայոց
փառաւոր և արդիւնաւոր ազգութիւնը։ — Եղիցի՛,
եղիցի՛։

ՎԵՐՋ